## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Մարսէյլի Ազգ. կեդր. վարչութեան անդամ ողբացեալ Ղազար Զպուքեանի մահուան քառասունքին առթիւ, Ազգ. կեդր. վարչութիւնը, ի յարգանս անոր յիշատակին՝ (Որ երեսուն տարիներէ ի վեր Մարսէյլի եկեղեցւոյ հոգաբարձութեանց եւ վարչութեանց մէջ իր գործունէութեամբ եւ նիւթական ու բարոյական օժանդակութեամբ միշտ օգտակար հանդիսացած է, մասնաւորաբար իր ծայրայեղ բարեպաշտութեամբ եկեղեցւոյ պայծառութեան հսկելով) կատարել կուտայ պատարագ Ս. Յարութիւն Մատրան մէջ, այսօր կիրակի ժամը 11ին: .

կը հրաւիրուին բարեպաշտ ժողովուրդն ու իր բարեկամները, յարգելու ողբացեալին յիշատակը։

(*Կնիք*)




IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS

208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H STEPHAN

«Միլլիյէթ» կը գրէ թէ օգոստոսէն սկսեալ, օտարականները պիտի վայելեն բոլոր այն իրաւունքները, որոնք ճշդուած են միջազգային օրէնսդրութեամբ։

Իսկ «Ճիւմհուրիյէթ» կը հաւաստէ թէ այդ թուականէն յետոյ, օտարականները պիտի ենթարկուին Թուրք օրէնքներուն, որոնք կ'երաշխաւորեն իրենց անձերն ու ինչքերը։ Օտարականները Թուրքերուն պէս պիտի վայելեն ազատութեան վարչաձեւը զոր կ'երաշխաւորէ Հանրապետութիւնը։

## Թուրք հանրային պարտքերը

Թուրք Հանրային Պարտքի Խորհուրդը կը հաղորդէ հետեւեալ զեկոյցը.— 1930 դեկտ. 23 թուակիր նամակով մը, Թուրք կառավարութիւնը յայտարարելով թէ 1928 յունիս 13ի պայմանագրութիւնը գործադրելու անկարելիութեան մէջ կը գտնուի, կրկին հրաւիրեց Պարտուց Խորհուրդը բանակցութեանց վերսկսիլ Էնկիւրիի մէջ. Թուրքիոյ պատքերը յարմարցնելու համար, երկրին տնտեսական ներկայ վիճակէն բխող անհրաժեշտութեանց։

«Որովհետեւ Թուրք Հանր. Պարտուց եւ պահանջատէրերու խորհուրդը իրաւասութիւն չունին պայմանագրութեան տրամադրութիւնները փոխող համաձայնութիւն մը կնքելու, նկատեցին թէ չեն կրնար պատասխանել Թուրք կառավարութեան հրաւէրին, ու որոշեցին ներկայ կացութիւնը տեղեկացնել պայմանագրութիւն ստորագրող ընկերութեանց եւ կազմակերպութեանց, որպէսզի կարենան հաւաքաբար քննել այս կացութիւնը և փոխադարձ համաձայնութեամբ որոշեն ուղեգիծ մը»։

## Ալպանիոյ երկրաշարժը

Երկրաշարժը կը շարունակէ պարբերաբար ցնցել Ալպանիոյ կարգ մը վայրերը։ Վերջին ցնցումներուն հետեւանքով, Քլաուզ գիւղին մէջ հինգ տուներ փլան։ Քորիցա քաղաքին մէջ, 70 տուներ փլած եւ 1000 տուներ անբնակելի դարձած են։ Խիստ ձմրան եւ քաղաքին բարձր դիրքին պատճառով, բնակչութիւնը կը տառապի ցուրտէն։ Փութկոտութեամբ խըրճիթներ կը կառուցուին 1000 հոգիի համար։ Դատական Նախարարին հսկողութեամբ, յատուկ յանձնախումբ մը կը ջանայ սննդեղէն ապահովել աղէտեալներուն, ինչպէս նաեւ վառելու փայտ, բժշկական օգնութիւն եւ ձրի դեղ ու դարման։

Նախորդ գիշեր, նոյն շրջանին մէջ, 8 թեթեւ ցնցումներ զգալի եղան յաջորդաբար։

## Հնդկական դատը

Կը կարծուի թէ Հնդկաստանի նոր փոխարքան Լորտ Ուէլլինկթըն, անմիջապէս որ գործի գլուխ անցնի, առաջին պարտքը պիտի սեպէ հրաւիրել Հնդիկ Ազգ. Խորհուրդը որ հանդիպում մը ունենայ Լոնտոնի խորհրդաժողովի պատուիրակներուն հետ, խորհրդակցելու համար Անգլիոյ վարչապետին յայտարարութեանց մասին։

Սակայն, Պոմպէյի մէջ կը կարծուի թէ Հնդիկ Ազգ. Խորհուրդը պիտի մերժէ փոխարքային այս հրաւէրը։

Միւս կողմէ սակայն, «Տէյլի Հէրըլտ» կը գրէ իր խմբագրականին մէջ.— Կանտիի կողմէ մեր թերթին տրուած յայտարարութիւնները այն յոյսը կը ներշնչեն թէ Հնդկաստանի հարցը պիտի լուծուի խաղաղօրէն։ Շիտակ է թէ Կանտի վարչապետին յայտարարութիւնները կը գտնէ անյարմար, բայց Կանտի մեղմօրէն կ'արտայայտուի եւ իր դատաստանը վերջնական չէ։ Բանակցութեանց առջեւ դռները չեն փակուած. Լոնտոնի Խորհրդաժողովին ծրագիրը չպիտի մերժուի կտրուկ կերպով, այլ լրջօրէն վիճաբանութեան պիտի դրուի Ազգ. Խորհուրդի պետերուն կողմէ»։

## Կանտի եւ անհնազանդութեան պայքարը

Պոմպէյի մէջ կը սպասեն Լոնտոնի խորհրդաժողովին պատուիրակներուն, որպէսզի հոն կազմակերպեն նոր խորհրդաժողով մը, որուն պիտի հրաւիրուին Կանտի եւ ազգ. խորհուրդի Գործադիրէն ուրիշ անդամներ, ինչպէս նաեւ Հնդկաստանի բոլոր կողմերէն գործի մարդեր։

Այս նկատումով ալ Հնդիկ առեւտրական սենեակներու տարեկան ժողովը տեղի պիտի ունենայ ո՛չ թէ Տէլհիի, այլ Պոմպէյի մէջ, այս հինգշաբթի օր։ Ներկայ պիտի ըլլայ նաեւ Կանտի, որուն կարծիքը պիտի ուզեն առեւտրականները, թէ ի՞նչպէս պիտի կրնան սպառել իրենց հսկայ մթերքները որոնց գումարը միլիոն ոսկիի կը հասնի։

Կը կարծուի թէ, Կանտի համամիտ ըլլալով մէկտեղ տուրքերու վճարման դէմ, եւ նոյնիսկ քաղաքացիական անհնազանդութեան պայքարի դադարման, երբեք տեղի տալու տրամադիր չէ օտար ապրանքներու դէմ պոյքոթին մէջ։ Հնդիկ առեւտրականները, մասնաւորաբար այդ մասին պիտի խորհրդակցին եւ կասկած որ Հնդիկ Ազգ. Խորհուրդն իսկ, այս կէտին շուրջ երկուքի պիտի բաժնուին։

Լոնտոնի մէջ, կառավարութիւնը տենդագին կ'աշխատի գտնելու համար ձեւ մը, որով կարելի ըլլայ շարունակել Լոնտոնի խորհրդաժողովին աշխատանքները։

## Ռուսիոյ փոխադրական տագնապը

Ռուսիոյ գործավարներու խորհուրդի նախագահը եւ Ստալին կոչ մը ուղղած են համայնավար, տնտեսական եւ փոխադրական կազմակերպութիւններուն, սէտիքաներուն եւ երիտասարդ համայնավարներուն, փոխադրութեանց մէջ աշխատանքի բարեկարգութեան մասին։

Կոչը կը հրահանգէ փոխադրութեան զանազան պաշտօնութեանց մէջ գործադրել կարգ մը միջոցներ, որպէսզի կարելի ըլլայ գոհացում տալ ազգային տնտեսութեան պէտքերուն։ Կոչը նկատի առած է փոխադրութիւն, զանազան ճիւղերու աշխատանքները, վերաշինութեան նիւթեղէնի յանձնում, վարիչ մարմնի կազմակերպում, վայրաշարժներու յատուկ կայքերու բարեփոխում եւայլն։

Երկաթուղային ամբողջ վարչութիւնը պիտի վերակազմուի եւ գործաւորներու աշխատանքի ու ապրուստի պայմանները պիտի բարեկարգուին։

Ներկայ տարուան ընթացքին, խորհրդային ճարտարարուեստը պարտաւոր պիտի ըլլայ յանձնել 1028 վայրաշարժներ՝ անցեալ տարուան 612ին փոխարէն, 60,000 բեռնատար վակոններ, անցեալ տարուան 17,500ի փոխարէն, 609,000 թոնօ փոխադրական նիւթեղէն՝ անցեալ 460,000ին փոխարէն։

## Հ. Յ. Դ.

ԳԱՒԱՌ

ԼԻՈՆԻ Համազասպ խումբի ժողովը վաղը իրիկուն ժամը 8.30ին Հ. Յ. Դաշնակցութեան Գրադարանին մէջ։

ՄԱՐՍԷՅԼԻ Քրիստափոր ենթակոմիտէի ժողովը վաղը իրիկուն ժամը 8.30ին սովորական հաւաքատեղին։ Կարեւոր օրակարգ։ Ներկայանալ անդամատետրով։

## ՑՈՒՑԱՏԵՏՐ

Զ. Ե. Ռ. Միութեան Փարիզի Մասնաճիւղին դասախօսական ժողովը այս հինգշաբթի իրիկուն ժամը 9ին Ֆլորիայի մէջ։ Կը դասախօսէ Պ. Եր. Տ. Անդրէասեան, նիւթ՝ հայերէնի դաս մը։ Մէկ ժամ սինէմա։ Կը հրաւիրուին անդամներն ու համակիրները։

Զ. Ե. Ռ. Միութեան Կեդրոն. Վարչութիւնը ընդհ. ժողովի կը հրաւիրէ Պուա-Քոլոնպի Մասնաճիւղին անդամները այս ուրբաթ իրիկուն ժամը 9ին Place Bourgogneի հաւաքատեղին։ Բացակաները կը պատժուին։




IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H. STEPHAN

անոր մօտակայ մէկ քաղաքը Հասթինկս, գրեթէ ամբողջովին քանդուեցան։ Թէեւ մարդկային կորուստներու թիւը ցարդ կարելի չէ եղած ստուգել, սակայն մօտ 700 կը կարծուի Նափիէյի եւ 100 Հասթինկսի մէջ մեռելներու թիւը։ Ատկից զատ, առնուազն 1000ի չափ վիրաւորներ։ Ցնցումները այնքան զօրաւոր էին որ ամբողջ ժողովուրդը անհուսարսափի մատնուած էր եւ անոնք որ մեծ պատերազմին ժամանակներ էին, յիշեցին ռազմադաշտի մահացու աղմուկները։ Փոշիի թանձր ամպ մը պատեր էր աւերակները։ Ցնցումէն ժայռի հսկայ կոյտեր փրթան լեռներէն եւ ծով գլորեցան ամբողջ ծովեզրի երկայնքէն։ Ժողովուրդին սարսափը աւելի շատցաւ երբ 50 քարիւղի մթերանոցներ կրակ առին եւ մէկ քանի վայրկեանի մէջ մրկեցին քաղաքը։

Ցնցումները տեւեցին երկու ժամու չափ քաղաքներէն զատ քանդելով նաեւ երկաթուղիի կամուրջները։ Գլխաւոր ցնցումէն յետոյ, ծովը բաւական տարածութեան վրայ քաշուեցաւ, աւազի վրայ պառկեցնելով նաւահանգիստ ապաստանած նաւերը։

Իտալիոյ մէջ եւս ցնցումներ զգալի եղան Թոսքանայի եւ Լիկուրիայի մէջ, մանաւանդ՝ Քարֆանիանայի եւ Սիվիձձանայի մէջ։

⁂ Երէկ առտու, Պավիերայի կարգ մը շրջաններուն մէջ եւս ուժեղ ցնցումներ արձանագրուեցան։ Գերմանօչեխօսլովաք սահմանագլուխին վրայ, ցնցումներու պահուն կը լսուէին ընդերկրեայ որոտումներ։ Բազմաթիւ շէնքեր վնասուած են։

⁂ Ալպանիոյ մէջ, վերջին տեղեկութեանց համաձայն, Լորչա քաղաքը քարուքանդ եղած է անցեալ գիշեր։ Ալպանիոյ կառավարութեան բարձր պաշտօնատարները օգնաւերով օգնութիւն փութացուցած են աղէտեալներուն։

Բուռն ցնցումներ տեղի ունեցած են նաեւ Ռէսանի մէջ, Եուկօսլաւիոյ հողին վրայ, ալպանական սահմանագլուխին մօտ։

Յիշեալ վայրերուն մէջ, պարբերական ցնցումները կը շարունակեն անհուդողի մէջ պահել ժողովուրդը։









## Հ. Յ. Դ. ՄԱՐՍԷՅԼԻ ՇՐՋԱՆԻ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՑՉԱԿԱՆ

ժողովը կը բացուի այս Շաբաթ իրիկուն ժամը 8ին կուսակցութեան հաւաքատեղիին մէջ։

## ՄԱՐՍԷՅԼԻ Հ. Յ.Դ. ԴՊՐՈՑ

վաղը Ուրբաթ ժամը 8.30—9.15 Հ. Յ. Դ. ծրագրի մեկնաբանում (ընկ. Պ. Հիւսեան)։

9.30—10.15 Հայաստանի աշխարհագրութիւն (ընկ. Ա. Մարտիրոսեան)։

## ԵՐԵԿՈՅԹ — ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Հ. Մ. Ը. Մ.ի Պէլվիլի մասնաճիւղին կողմէ, 7 Փետր. Շաբաթ իրիկուն ժամը 9էն մինչեւ առաւօտ. Place des Abbesses. 3 Rue la Vieuville Harolaի սրահներուն մէջ։ Մէթրօ Abbesses եւ Pigalle.

Կը նախագահէ Պ. Վ. ՓԱՍՏՐՄԱՃԵԱՆ

Կը խօսի ՏԻԿԻՆ ԷԼԼԷՆ ԲԻՒԶԱՆԴ

Երգ, ջութակ, արտասանութիւն, ճազ։ Օր. Լուսինեան կը պարէ Կովկասեան պարեր։ Կը ներկայացուի Սկաուտական կեանքէ առնուած բանակում «ՀԱՅԱՍՏԱՆ»ի մէջ։

Մուտք 7 ֆրանք 50

Ճոխ պիւֆէ

## Հ. Յ. Դ.

ՓԱՐԻԶ

ԻԹԱԼԻԻ Աղբիւր-Սերոբ խումբի ժողովը այս Շաբաթ իրիկուն ժամը 9ին սովորական հաւաքատեղին։ Կարեւոր օրակարգ։

ՔՐԻՍՏԱՓՈՐ խումբի ժողովը վաղը Ուրբաթ իրիկուն ժամը 9ին Ֆլորիայի մէջ։ Կը դասախօսէ՝ ընկ. Օհան Կարօ։ Ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է։

ԻՍԻ ԼԷ ՄՈՒԼԻՆՕԻ Վռամեան խումբի ժողովը վաղը Ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին, 186 Ave. Verdun։ Կարեւոր օրակարգ։ Բացակաները նկատի պիտի առնուին։

Իսկ Մջօյի խումբի ժողովը Շաբաթ իրիկուն սովորական հաւաքատեղին։

ԳԱՒԱՌ

ԼԻՈՆԻ կուկունեան խումբի ժողովը վաղը Ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին Գրադարանին մէջ։ Ընկերներու ներկայութիւնը անհրաժեշտ է։

ԼԻՈՆԻ Պատ. միութեան ընդհ. ժողովը այս իրիկուն ժամը 8.30ին Գրադարանին մէջ։ կարեւոր օրակարգ։

ՎԻԷՆԻ Ապառաժ խումբի ժողովը վաղը իրիկուն ժամը 8ին ծանօթ հաւաքատեղին։ Ներկայանալ անդամատետրով, փակելու համար առկախ հաշիւները։

## ՑՈՒՑԱՏԵՏՐ

Զ. Ե. Ո. Միութեան Փարիզի Մասնաճիւղին դասախօսական ժողովը այսօր հինգշաբթի իրիկուն ժամը 9ին Ֆլորիայի մէջ։ Կը դասախօսէ Պ. Եր. Տ. Անդրէասեան, նիւթ՝ հայերէնի դաս մը։ Մէկ ժամ սինէմա։ Կը հրաւիրուին անդամներն ու համակիրները։

Զ. Ե. Ո. Միութեան Կեդրոն. վարչութիւնը ընդհ. ժողովի կը հրաւիրէ Պուա-Քոլոմպի Մասնաճիւղին անդամները վաղը Ուրբաթ իրիկուն ժամը 9ին Place Bourgogneի հաւաքատեղին։ Բացակաները կը պատժուին։

ՎԱՐԴԱՆԱՆՑ.— Այս Կիրակի ժամը 3ին Սէվրի Մուրատեան վարժարանի դահլիճին մէջ կը բանախօսէ Հ. Սահակ Վրդ. Տէր Մովսէսեան, նիւթ ունենալով «Վարդանանց պատերազմի պատմական նշանակութիւնը»։

ՈՒՐՖԱՅԻ Հայր. Միութեան ժողովը վաղը Ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին Ֆլորիայի մօտ։

ԱՏԱՓԱԶԱՐԻ Հայր. միութեան նոր վարչութիւնը կազմուած է հետեւեալներէ՝ ատենապետ՝ Յովհ. Յովհաննէսեան, ատենադպիր՝ Գ. Ակոնայեան, գանձապահ՝ Մ. Մինասեան, խորհրդականք՝ Վ. Յովակիմեան, Հ. Ակոնայեան։ Թղթակցութիւնները ուղղել հետեւեալ հասցէով՝ H. Agonayan, 67 Rue Julien Lacroix, Paris (20).

## ՆԱՄԱԿԱՏՈՒՓ

ՍՏԱՑԱՆՔ

Պաղտատ, Աղան.— Կէս անգլ.



ՆԱՄԱԿ ունին Շապին Գարահիսարի Հայր. միութիւնը, Օր. Գոհար Զաքարեան, Օր. Սիրվարդ Նաճարեան եւ Պ. Յովսէփ Մալոյեան։ Դիմել՝ Յառաջի վարչութեան։

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— Գարահիսարցի Մովսէս Տիրեան կը փնտռէ իր որդին կարապետ Տիրեան, մօր անուն՝ Վերոնիքա, քոյրերը՝ Արաքսի, կատարինէ եւ Ատրինէ։ Իզմիրի աղէտին (16 տարեկան էր) անյայտացած է։ Իր ստոյգ հասցէն տուողին 1 տարեկան «Յառաջ» եւ 500 ֆր. նուէր։ Իմացնել՝ Բիւզանդ Ժամակոչեանի, 11 Fbg. Gambetta, Aubenas, (Ardèche), France.

Կը խնդրուի արտասահմանի թերթերէն արտատպել։

— Ամասիացի Գուլպայագործ Բիւզանդ Գ. Ժամակոչեան կը փնտռէ իր քոյրը Նուարդ որ անյայտացած է տարագրութեան միջոցին 10 տարեկան հասակին։ Լսուած է թէ հայ պայ մը ուզած է միասին Պոլիս տանիլ, բայց Նուարդ հիւանդ ըլլալով յանձնած է Հալէպի որբանոցը եւ յետոյ որդեգրուած է մէկու մը կողմէ։ Իր մասին ստոյգ լուր տուողին 1 տարուան «Յառաջ» եւ 500 ֆր. նուէր։ Իմացնել իր եղբօր Բ. Գ. Ժամակոչեանի, 11 Faubourg Gambetta, Aubenas (Ardéche), France։

Կը խնդրուի արտասահմանի թերթերէն արտատպել։

— Կը փնտռուի Սպարտացի Ղազարոս Տօքթօրեան իր մեծ մօր Մարիամ Ղազարեանի եւ մօրաքրոջ Թագուհիի կողմէ։ Կը կարծուի թէ Միտիլլի կղզին կը գտնուի։ Իմացնել Սիրանուշ Մանուկեանի, Société France Orient: Saint Jérome, Marseille. France.

## ՀՐԱՊԱՐԱԿ ԵԼԱՒ

Մարսէյլի Հ. Յ. Դ. Պատ. Միութեան «ԳՈՅԱՄԱՐՏ» օրացոյցը, ճոխ բովանդակութեամբ եւ հերոսներու նկարներով։ Դիմել Ճարայեանի, 14 Rue de la Fare, Marseille. Կամ Յառաջի վարչութեան։

Գին՝ 6 ֆրանք, փոստի ծախքով 6.50 ֆր.։

## Առիթէն օգտուեցէք

Ծախու է Առնուվիլ լէ կոնէսի մէջ քարաշէն տուն մը 4 սենեակներով։ Գին՝ 20000 ֆր. (իսկական արժէքը 30000 ֆր. է)։ 140 մեթր հող, ջուր, ելեկտրականութիւն։ Կար տիւ Նորէն 18 վայրկեան, Առնուվիլի կայարանէն 7 վայրկեան հեռու։ Դիմել՝ Léon Papazianի, 194 Fbg. St. Martin, Paris (10).
























EMPIRE Մեւզիք-Հօլ՝ 37 Av. Wag...

IMPRIMERIE - MASSIS - ÉDITI...

208bis, Rue Lafayette Paris

Le Gérant H. STEPHA...

քաղաքականութեան մասին, զոր կառավարութիւնը կը մտադրէ հետապնդել Լոնտոնի հնդկական համաժողովին աշխատանքները շարունակելու համար։ Կառավարութեան ներկայացուցիչը յայտնեց նաեւ թէ կանտոնի եւ հնդիկ ուրիշ պետերու յայտարարութեանց մասին, բացի լրագրական տեղեկութիւններէ, ուրիշ ոչ մէկ պաշտօնական տեղեկութիւն ստացած է։

Պահպանողական երեսփոխանի մը հարցման պատասխանելով, կառավարութեան ներկայացուցիչը յայտնեց նաեւ թէ ո՛չ մէկ տեղեկութիւն ստացած է վերջերս, Հնդկաստան գաղտնի մտցուած մեծաքանակ զէնքի եւ ռազմանիւթի մասին, թէեւ նման փորձեր յաճախ կատարուած են ասկից առաջ։



## Հ. Յ. Դ. ՓԱՐԻԶԻ ԿՈՄԻՏԷՆ ԱՐՏԱԿԱՐԳ ԸՆԴՀ. ԺՈՂՈՎԻ

կը հրաւիրէ բոլոր խումբերու ընկերները Հինգշաբթի իրիկուն ժամը 8.30ին Շօփ Փարիզիէնի (Rue des Ecoles) վերնայարկը։

## «ՓԵՏՐՈՒԱՐ 18» ՍԱՐՍԷԼԻ ՄԷՋ

կազմակերպուած Հրայր խումբի կողմէ

Այս կիր. ժամը 3ին Սալ Ժաքըմարի սրահը՝ 81 rue de Paris, Sarcelles

Կը խօսի՝ ընկ. ՕՀԱՆ ԿԱՐՕ

երգ եւ արտասանութիւն։

## ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Պրիւսէլի Հայ Տիկնանց Միութեան կողմէ

Այս Շաբաթ իրիկուն ժամը 10ին

Salle des Fêtes de l'Hôtel Atlanta

Հայ ժողովրդական երգեր, անակնկալներ, եւայլն

## ՎԱՐԴԱՆԱՆՑ

Նախաձեռնութեամբ ՍԻՓԱՆ երգչախումբի

Այս Շաբաթ իրիկուն ժամը 8.30ին Salle Géographieի մէջ

184 Bld. St. Germain

Կը նախագահէ ԳԵՐ. ՎՌԱՄՇԱՊՈՒՀ ՍՐԲԱԶԱՆ

կը մասնակցին՝ Օր. Գաբրիպեան (երգ), Օր. Ղազարոսեան (դաշնակ), Օր. Ջառափեան (դաշնակ), Օր Երամեան (ջութակ), Պ. Նաւասարդեան (երգ), Օր. Տէր Թովմասեան (արտասանութիւն) եւ Սիփան երգչախումբը իր ամբողջ կազմով, ղեկավարութեամբ Պ. ՍԱՔՕ ՅԱԿՈԲԵԱՆԻ։

Տախտերու մասնակցութեան համար 3 ֆրանք

## ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ ՎԻԷՆԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Ապառաժ խումբի

Մարտ 8ին կը ներկայացուի՝ «ՍՈՒԼԹԱՆ ՀԱՄԻՏ»

Միութիւններէ կը խնդրուի նկատի ունենալ այդ թուականը

## ԵՐԵԿՈՅԹ — ԹԷՅԱՍԵՂԱՆ

կազմակերպուած Շավիլի երիտ. երկսեռ միութեան կողմէ

Այս Շաբաթ գիշեր ժամը 8.45ին Salle Pathinի սրահը

104 Grand'Rue, Chaville

Առնել հանրակառք թիւ 1 եւ իջնել Շավիլ Anciénne Mairie

# Հ. Յ. Դ.

ՊՈՒԱ ՔՈԼՈՆՊԻ Վիշապ խումբի ժողովը այսօր Հինգշաբթի իրիկուն ժամը 8.30ին 71 Rue Charles Chefston, Պուա Քոլոնպ։ Կարեւոր օրակարգ։

ՊՈՒԱ ՔՈԼՈՆՊԻ Զէյթուն կոմիտէն վիճաբանական ժողովի կը հրաւիրէ իր շրջանի բոլոր ընկերներն ու համակիրները այս շաբաթ իրիկուն ժամը 8.45ին 79 Rue des Chambards. Նիւթ՝ «Ներքին թէ՞ արտաքին թշնամի»։

ԻՍԻ Լէ ՄՈՒԼԻՆՕ եւ Սիւրէն բնակող բոլոր ընկերները պարտաւորիչ կերպով խորհրդակցութեան կը հրաւիրուին, այս կիրակի ժամը 3.30ին, 150 Rue Jean Jaurès (Puteaux) սրճարանը։

ՊԷՔՈՆ լէ Պրիւէր բնակող բոլոր անհատ դաշնակցականները, պարտաւորիչ կերպով խորհրդակցութեան կը հրաւիրուին այս կիրակի կէսօրէ վերջ ժամը 3.30ին 66 Rue Sabliere (կայարանին դիմացի պիւրօ Թապայի սրճարանը)։

Գ Ա Ւ Ա Ռ

ԼԻՈՆԻ Պատ. միութեան գրախօսական ժողովը այսօր Հինգշաբթի իրիկուն ժամը 8.30ին Գրադարանի սրահը։ Կը հրաւիրուին ընկերներն ու համակիրները։

## ԳՐԱԿԱՆ ԱԿՈՒՄԲ

Վարդանանցի առթիւ, Գրական ակումբին այս շաբթուան (14 փետր.) դասախօսութիւնը յետաձգուած է փետր. 21ի։

Կը խօսի Շ. Միսաքեան, նիւթ ունենալով «Յունահայ գաղութը»։

## ՀՐԱՊԱՐԱԿԱՅԻՆ ԲԱՆԱԽՕՍՈՒԹԻՒՆ

Նիսի Լսար. Միութեան կողմէ այս Շաբաթ իրիկուն ժամը 8.30-ին Գրադարանին մէջ, 182 Bld. Madeleine։ Կը խօսին՝ Պ. Մանուկեան (Վարդանանց) եւ Պ. Մատէնճեան (Գաղութահայ կազմակերպութիւններ)։ Կը հրաւիրուին բոլոր հայրենակիցները։ Մուտքը ազատ է։

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— Սամսոնցի այրի տիկին Առուսեակ Սիսակեան կը փնտռէ իր տղան Օհանիկ, որ տեղահանութեան միջոցին տարագրուած է Պոլսէն անորոշ ուղղութեամբ։ Լուր տուողին 500 ֆր. նուէր։ Հասցէ՝ Mme Aroussiak Sissakian, 27 Rue Beauséjour, Sarcelles (S. et O.). France.

— Պարտիզակցի Հոփփսիմէ Յովսէփեան կը փնտռէ իր հօրաքրոջ աղջիկները Բարուհի, Սրբուհի եւ Աղաւնի։ Իրենց հօր անունը՝ Գրիգոր Չօրեկին, մօր անուն՝ Արուսեակ։

Բարուհի եւ Սրբուհի ամուսնացած էին։ 1923ին կը բնակէին Գատըգիւղ (Պոլիս) Րիզա փաշա թաղը։ Իմացնել՝ Տիկին Փափազեանի 83, Route de la St. Germain, Carières s)Seine, France.

## ՑՈՒՐՇԱՏԵՏՐ

Զ. Ե. Ռ. Միութեան փարիզի մասնաճիւղին վիճաբանական դասախօսութիւնը այսօր Հինգշաբթի իրիկուն ժամը 9ին Ֆլորիայի մէջ։ Կը խօսի Պ. Յովհ. Տէր Յովհաննէսեան, Կազմակերպութիւնք եւ կազմակերպիչնք։ Մէկ ժամ սինէմա։ Կը հրաւիրուին անդամներն ու համակիրները։

Զ. Ե. Ռ. Միութեան Պիյեանքուրի մասնաճիւղին ընդհ. ժողովը վաղը Ուրբաթ իրիկուն ժամը 9ին, 186 Ave. Verdun։ Կը հրաւիրուին անդամները եւ մասնաճիւղին Ասի ֆութպոլի խումբը։ Ներկայ պիտի ըլլայ նաեւ կեդր. վարչութեան լիազօրը։

ԱՌՆՈՒՎԻԼ լէ կոնէսի հայրենակիցները ժողովի կը հրաւիրուին վաղը ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին Նիկողոսեանի սրճարանը, 121 Ave. de l'Union. կազմելու համար երիտասարդաց միութիւն մը։

## ԱՆԳԼԵՐԷՆԻ ԴԱՍԵՐ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Դիւրամատչելի պայմաններով։ Դիմել՝ Օր. Փափազեանի, 8 rue Wulfran Puget, Marseille.





IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H. STEPHAN

## Հ. Յ. Դ. ՓԱՐԻԶԻ ԿՈՄԻՏԷՆ ԱՐՏԱԿԱՐԳ ԸՆԴՀ. ԺՈՂՈՎԻ

*կը հրաւիրէ բոլոր խումբերու ընկերները այսօր Ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին Շօփ Փարիզիէնի* (Rue des Ecoles) *վերնայարկը։*

## «ՓԵՏՐՈՒԱՐ 18» ՍԱՐՍԷԼԻ ՄԷՋ

կազմակերպուած Հրայր խումբի կողմէ

Այս կիր. ժամը 3ին Սալ ժաքըմարի սրահը՝ 81 rue de Paris, Sarcelles

*կը խօսի՝ ընկ. ՕՀԱՆ ՀԱՐՕ*

երգ եւ արտասանութիւն։

## ՀԱՆԴԷՍ ՎԱՐԴԱՆԱՆՑԻ ԱՌԹԻՒ

Նախաձեռնութեամբ ՍԻՓԱՆ երգչախումբի

վաղը Շաբաթ իրիկուն ժամը 8.30ին Salle Géographieի մէջ

184 Bld. St. Germain

*կը նախագահէ ԳԵՐ. ՎՌԱՄՇԱՊՈՒՀ ՍՐԲԱԶԱՆ*

*կը խօսի՝ Պ. ԵՐՈՒԱՆԴ ՏԷՐ ԱՆԴՐԷԱՍԵԱՆ*

կը մասնակցին՝ Օր. Գարիպեան (երգ), Օր. Ղազարոսեան (դաշնակ), Օր. Ջառափեան (դաշնակ), Օր Երամեան (ջութակ), Պ. Նաւասարդեան (երգ), Օր. Տէր Թովմասեան (արտասանութիւն) եւ Սիփան երգչախումբը իր ամբողջ կազմով, ղեկավարութեամբ Պ. ՍԱՔՕ ՅԱԿՈԲԵԱՆԻ։

Տախքերու մասնակցութեան համար 3 ֆրանք

## ԵՐԵԿՈՅԹ — ԹԷՅԱՍԵՂԱՆ

կազմակերպուած Շավիլի երիտ. երկսեռ միութեան կողմէ

վաղը Շաբաթ գիշեր ժամը 8.45ին Salle Pathinի սրահը

104 Grand'Rue, Chaville

Առնել հանրակառք թիւ 1 եւ իջնել Շավիլ Anciénne Mairie

## ՀԱՆԴԷՍ ՎԱՐԴԱՆԱՆՑԻ

Փարիզի Հարաւ. Շրջ. Յառաջդիմասիրաց միութեան կողմէ

Այս կիրակի ժամը 2.30ին Bourg-la Reineի Salle des Bargnesի մէջ

Երգ, արտասանութիւն, բանախօսութիւն եւ կը ներկայացուին վարդանի կեանքէն պզտիկ դրուագներ դպրոցի աշակերտներու կողմէ։

Մուտքը ազատ է

Հաղորդ.կց. միջոց.— *Առնել հանրակառք թիւ 88 եւ իջնել* Place Condorcet, Bourg-la-Reine.

## ՓԱՐԻԶԱՀԱՅ ՏՐԱՄԱԹԻՔ ԹԱՏԵՐԱԽՈՒՄԲ

Ղեկավար՝ ՏՐԴԱՏ ՆՇԱՆԵԱՆ

**THEATRE RENÉE MAUBEL 8-10 RUE DE L'ORIENT**

8րդ տարի — 120րդ ներկայացում

*Վարդանանցի տօնին առթիւ ժողովրդական մեծ ներկայացում*

*Վաղը Շաբաթ գիշեր ժամը ճիշդ 8.30ին կը ներկայացուի*

## ԱՆՄԱՀՆ ՎԱՐԴԱՆ ՄԱՄԻԿՈՆԵԱՆ

*Պատմական շքեղ հագուստներով եւ նոր տէքոռներով, դիւցազներգութիւն 5 արար եւ 2 պատկեր։*

*Գիները՝ 175 օթեակ, 20—15 ֆօթ. 10 պալք. Խճողումի տեղի չտալու համար կանխաւ ձեր տեղերը ապահովեցէք սովորական վայրերէն*

*ԾԱՆՕԹ.— Միեւնոյն ներկայացումը դարձեալ նոր հագուստներով Պոլա Քոլոնպի մէջ, 15 Փետրուար կիրակի գիշեր ժամը 8.30ին Քաղաքապետական Թատրոնին մէջ (Րիւ տէ Հալ)*

*Մուտք Ա. կարգ 7.50 ֆր. Բ. կարգ 5 ֆր. Տոմսերը ստանալու համար դիմել Գառնիկ Յովհաննէսեանին 2 Րիւ Վիքթոր Հիւկօ։*

## ՇԱԲԱԹ. ԱՊՐԻԼ 11ԻՆ

ցեղի կ'ունենայ Փարիզի Հայ Սկաուտներու տարեկան *ՊԱՐԱՀԱՆԴԷՍ*ը։ կը խնդրուի նկատի առնել այդ թուականը։

*Շուտով լոյս կը տեսնէ*

*« ԼԻՈՆԱՀԱՅ ՈՒՂԵՑՈՅՑԸ »*

## ՅԵՐԵԿՈՅԹ — ՊԱՐ

*Աղքատախնամ ընկերութեան Օգն. Օրիորդաց միութեան կողմէ այս կիրակի կէսօրէ վերջ ժամը 4էն մինչեւ կէս գիշեր* Hôtel Mac Mahanի *մէջ*, *29* Ave. Mac Mahon, Paris *(17)*.

## Հ. Յ. Դ.

ՊՈԼԱ ՔՈԼՈՆՊԻ Ջէյթուն կոմիտէն վիճաբանական ժողովի կը հրաւիրէ իր շրջանի բոլոր ընկերներնուհամակիրները այսօր շաբաթ իրիկուն ժամը 8.45ին 79 Rue des Chambards. Նիւթ՝ *«Ներքին թէ՞ արտաքին թշնամի»*։

ՓԻԽԹՕ եւ Սիւրէն բնակող բոլոր ընկերները պարտաւորիչ կերպով խորհրդակցութեան կը հրաւիրուին, այս կիրակի ժամը 3.30ին, 150 Rue Jean Jaurès (Puteaux) սրճարանը։

ՊԷՔՈՆ լէ Պրիւէր բնակող բոլոր անհատ դաշնակցականները, պարտաւորիչ կերպով խորհրդակցութեան կը հրաւիրուին այս կիրակի կէսօրէ վերջ ժամը 3.30ին 66 Rue Sabliere (կայարանին դիմացի պիւրօ թապայի սրճարանը)։

*Գ Ա Ւ Ա Ռ*

*ՍԷՆ ԺԻՒԼԻԷՆԻ (Մարսէյլ) Զաւարեան ենթակոմիտէի ընդհ. ժողովը վաղը իրիկուն ժամը 8.30ին սովորական վայրը։ Կարեւոր օրակարգ։*

*ՄԱՐՍԷՅԼԻ Պատ. Միութեան ընդհ. ժողովը այս կիրակի իրիկուն ժամը 8էն 63 Րիւ տը լա Րէփիւպլիքի մէջ։*

*ՆԻՍԻ Իսրայէլ Օրի եւ Անդրանիկ խումբերու անդամները ժողովի կը հրաւիրուին վաղը իրիկուն ժամը 8.30ին 202* Bld. Madeleine, *սրճարանի սրահը։*

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ԱՌՆՈՒՒԼ լէ կոնէսի հայրենակիցները ժողովի կը հրաւիրուին այսօր ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին Նիկողոսեանի սրճարանը, 121 Ave. de l'Union. կազմելու համար եղբայրասիրական միութիւն մը։

### *ԿԵՍԱՐԱՑԻՆԵՐՈՒՆ*

*Կեսարիոյ եւ Շրջանի Հայրենակցական Միութիւն մը կազմելու համար իրենց հաւանութիւնը գրաւոր կերպով յայտնող բոլոր հայրենակիցները կը հրաւիրուին խորհրդակցական ժողովի, որ տեղի պիտի ունենայ այս կիրակի կէսօրէ վերջ ժամը 4ին, Ֆլորիա ճաշարանին մէջ՝ 61* rue Monsieur le Prince. (Métro Odéon).

Նախաձեռնող մարմին

*Վարձու է Պատուաւոր հայ ընտանիքի մը մէջ (կահաւորուած կամ պարապ) սենեակ մը մէկ կամ երկու հոգիի համար, նպաստաւոր պայմաններով։ Դիմել 23,* rue de la Varonne, St. Maur des Fossé, (Seine). *Առնել* Porte de Vincennes*էն հանրակառք թիւ 110, եւ շոգեկառք՝* Bastille*էն։*

## ՀՐԱՊԱՐԱԿԱՅԻՆ ԲԱՆԱԽՕՍՈՒԹԻՒՆ

Նիսի Լսար. Միութեան կողմէ վաղըՇաբաթ իրիկուն ժամը 8.30ին Դրադարանին մէջ, 182 Bld. Madeleine։ կը խօսին՝ Պ. Մանուկեան (Վարդանանց) եւ Պ. Մատէնճեան (Գաղութահայ կազմակերպութիւններ)։ կը հրաւիրուին բոլոր հայրենակիցները։ Մուտքը ազատ է։

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— Սամսոնցի այրի տիկին Առուսեակ Սիսակեան կը փնտռէ իր տղան Օհանիկ, որ տեղահանութեան միջոցին տարագրուած է Պոլսէն անորոշ ուղղութեամբ, Լուր տուողին 500 ֆր. նուէր։ Հասցէ՝ Mme Aroussiak Sissakian, 27 Rue Beauséjour, Sarcelles (S.et O.). France.

— *Պարտիզակցի Հօփփիմէ Յովսէփեան կը փնտռէ իր հօրաքրոջ աղջիկները Բարուհի, Սրբուհի եւ Աղաւնի։ Իրենց հօր անունը՝ Գրիգոր Չոբեկին, մօր անունը՝ Արուսեակ։*

*Բարուհի եւ Սրբուհի ամուսնացած էին։ 1923ին կը բնակէին Գատըգիւղ (Պոլիս) Րիզա փաշա Թաղը։ Իմացնել՝ Տիկին Փափազեանի 83,* Route de la St. Germain, Carières s)Seine, France.

## ԱՆԳԼԵՐԷՆԻ ԴԱՍԵՐ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Դիւրամատչելի պայմաններով։ Դիմել՝ Օր. Փափազեանի, 8 rue Wulfran Puget, Marseille.

### *ՄԱՍՆԱԳԷՏ ԲԺԻՇԿՆԵՐ*

96 R. Rivoli, *մէթ. Շաթլէ։ Արմատ. եւ նոր մէթոտ. դարմ. արանց եւ կանանց մորթի, արեան, վեներ. հիւդթ. եւ վարիսի։ Ամէն օր9-12, 2-8, Կիր, 9-12։*

## ՀԻՒԱՆԴՆԵ՛Ր

*Կատարեալ վստահութեամբ դիմեցէք մասնագէտ բժիշկներուն, 123* Boul. Sébastopol *մէթ. Սէն Տընի, Ռէօմիւր։ Վեներական ախտեր, Չերմամիզութիւն սուր եւ հինցած, անկարողութիւն, ֆրանկախտ, արեան, մորթի հիւանդութ. արեան և մէզի քննութիւն, քիթի, կոկորդի եւ ականջի ցաւեր։ Դարմ. ռէօնթկէնեան եւ անդրմանիշակագոյն ճառագայթներով։ Կընդունինք ասիրանս ասսիալի հիւանդն.։ Խորհր. ամէն օր 9-12 եւ 2-8։ Կիր. 9-12։ Ակնաբուժ.— Խորհրդակցութիւն եւ դարմանում, ամէն օր 9-12։*




EMPIRE Մեւզիք-Հօլ՝ 37 Av. Wagram

IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS 208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H. STEPHAN

նկատեն որ Մաքտոնալտի Նամակը վերջ կը դնէ հրէական եւ արաբական հաշտութեան ամէն յոյսերու: Նոյն անձը յայտնած է նաեւ թէ քանի որ Մաքտոնալտի Նամակը իրաւունք կուտայ Հրեաներուն որ պոյքոթի ենթարկեն արաբ աշխատաւորները, արաբական խորհուրդն ալ իր կարգին, իբր փոխվրէժ պոյքոթի պիտի ենթարկէ Պաղեստին հաստատուած Հրեաներու բոլոր արտադրութիւնները:

## Ձերբակալութիւններ Սոֆիայի մէջ

Անցեալ շաբթու, հաղորդեր էինք թէ մակեդոնացի կուսակցապետի մը Իվան Միխայլոֆի մտերիմը Թուրքոֆ սպաննուեր էր Սոֆիայի մէջ՝ հակառակորդներու կողմէ: Սպաննիչները ձերբակալուեր եւ յայտներ էին թէ կը պատկանին Փրոթոկէրոֆի խումբին եւ գործած են իրենց պետին հրահանգով: Այս սպանութեան հետեւանքով Սոֆիայի ոստիկանութիւնը ձերբակալեց բազմաթիւ Մակեդոնացիներ:

Երէկ առաւօտ, Սոֆիայի մէջ զրոյց շրջեցաւ թէ կէորկ Բաքխրիսթոֆ, Փրոթոկէրոֆի կուսակցութեան ղեկավար տարրերէն մէկը, ինչպէս նաեւ ուրիշ պետ մը կինը, առեւանգուած են Իվան Միխայլոֆի կուսակիցներուն կողմէ, որոնցմէ էր սպանեալ Թուրքոֆ: Կ'ենթադրուի թէ Իվան Միխայլոֆ, այս պատանդները պիտի օգտագործէ, նահանջ պարտադրելու համար հակառակորդ տարրերուն:

## Յոյնեւպուլկար վէճը

Լուր տարածուեցաւ թէ Պուլկարիա մերժած է Հէնտըրսընի առաջարկը յոյնեւպուլկար վէճը ենթարկելու իրաւարարութեան: Այս առթիւ Յունաստանի արտաքին նախարարը կը յայտարարէ թէ չի կարծեր, որ Պուլկարիա մերժէ Հէնտըրսընի առաջարկը, թէեւ տակաւին պատասխան չէ տուած: Անմիջապէս որ Պուլկարիա ընդունի, Յունաստան Պուլկարիոյ հետ պիտի կնքէ առեւտրական դաշնագիր մը, որ մեծապէս պիտի նպաստէ վէճերու կարգադրութեան:









## Հ. Յ. Դ.

*ԳԱՒԱՌ*

*ԼԻՈՆԻ Համազասպ խումբի ժողովը վաղը իրիկուն ժամը 8.30ին,* 181 Cours Lafayette. Café de ta Gare*ի սրահին մէջ:*

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

*Զ. Ե. Ո. Մ.ի փարիզի մասնաճիւղի վարչութիւնը ստիպողաբար ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր բոլոր անդամ-անդամուհիները, այս հինգշաբթի երեկոյեան ժամը 9ին Ֆլորիայի մէջ,* 61 rue M. le Prince: *Անդամատետրերը միասին բերել:*

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— Սամսոնցի այրի տիկին Արուսեակ Սիսակեան կը փնտռէ իր տղան Օհանիկ, որ տեղահանութեան միջոցին տարագրուած է Պոլսէն անորոշ ուղղութեամբ: Լուր տուողին 500 ֆր. նուէր: Հասցէ' Mme Arousiak Sissakian, 27 Rue Beauséjour, Sarcelles (S.et O.). Francc.

— *Պարտիզակցի Հոփփսիմէ Յովսէփեան կը փնտռէ իր հօրաքրոջ աղջիկները Բարուհի, Սրբուհի եւ Աղաւնի: Իրենց հօր անունը՝ Գրիգոր Զորեկեն, մօր անուն՝ Արուսեակ:*

*Բարուհի եւ Սրբուհի ամուսնացած էին: 1923ին կը բնակէին Գատըգիւղ (Պոլիս) Րիզա փաշա Թաղը: Իմացնել՝ Տիկին Փափազեանի* 83, Route de la St. Germain, Carières s)Seine, France.

— *Կը փնտռուի Պաթումցի Արտաշէս Չուչորեան, հօր անուն Ներսէս, մօր անուն Զարդար: 1920ին իր 9 տարեկան հասակին Պաթումի մէջ անգլ. զրահաւոր մը մէջ մտած է աշխատելու: 1922ին Պոլիս տեսնուած է: Այժմ իր մասին տեղեկութիւն չունինք: Լուր տուողին 1 տարեկան «Յառաջ» նուէր: Իմացնել՝* Arménak Markarian, 6 rue Boussairolles, Montpellier, (Herault) France.

*Կը խնդրուի արտասահմանի թերթերէն արտատպել:*

— *Կը փնտռուի Պրուսայի Չէնկիլէր գիւղէն Մարտիրոս Քէօռէեան որ տարագրութեան միջոցին մնացած է Րաքայի շրջանի Արաբներուն մօտ: Իր մասին ստոյգ լուր տուողին 1000 ֆր. նուէր: Իմացնել՝* Sahac Keusseian*ի*. Latamarco 171, Corrientes, (Rép. Argentine): *Կը խնդրուի Սուրիահայ եւ Եգիպտահայ թերթերէն արտատպել:*




IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H STEPHAN


















*Յետոյ, յիշելով թէ Հնդկաստան այն ատեն միայն ազատ կրնայ ըլլալ, երբ իր ձեռքին մէջ ունենայ իր ելեւմտական հսկողութիւնը, կ'աւելցնէ.—*

*«Անգլիացիները չեն կրնար գաղափար կազմել ժողովրդային զանգուածներու արտակարգ թշուառութեան մասին: Անոնք լորտ Սալըզպըրիի խօսքով, ստիպուեցան ճերմակ արիւն թափել, հայթայթելու համար հասոյթներ, որոնք այս դժբախտ երկրին բնակիչներուն կարողութեան համեմատական չէր: Անոնք ո'չ միայն անկարող են տանելու յաւելուածական տուրքեր, այլ ընդհակառակն, թեթեւնալու պէտք ունին այն տուրքերէն, զորս իրենցմէ կը պահանջեն ներկայիս: Այս տեսակ երկիր մը, չի կրնար հանդուրժել օտար վարչութեան մը վտանգին»:*

## Սնոտընի զեկուցումին յետոյ

*Կը յիշուի թէ Անգլիոյ խորհրդարանին առջեւ, երկրին ելեւմտական կացութեան մասին՝ Նախարար Սնոտընի տուած զեկոյցը, մեծ յուզում պատճառեր էր: Նոյն իսկ Աշխատաւորական շրջանակները խռովքի մատնուեր եւ որոշեր էին բացատրութեան կանչել իրենց կուսակից Նախարարը: Աշխատաւորական երեսփոխաններու այդ նիստին, ներկայ էին նաեւ վարչապետը եւ ուրիշ նախարարներ:*

*Սնոտըն, աւելի մուգ գոյներով ներկայացուց կացութիւնը: Զծածկեց իր ընկերներէն թէ այս տարուան համար կը նախատեսէ 40—50 միլիոն ոսկիի բաց մը, թէ յառաջիկայ ելեւմտական տարին աւելի դաժան պիտի ըլլայ եւ թէ գործազրկութիւնը փոխանակ նուազելու աւելի եւս կը սաստկանայ եւ նախատեսելով ելեւմտական կացութեան վատթարացումը՝ պէտքը շեշտեց ծայրայեղ խնայողութեան: Նախարարը իր զեկոյցը վերջացուց աւելցնելով.— Եթէ կայ մէկը որ կը փափաքի տեղս գրաւել, պատրաստ եմ քաշուելու»:*

*Հակառակ այս բացատրութիւններուն սակայն, մէկ քանի երեսփոխաններ շարունակեցին խստիւ քննադատել ելեւմտական նախարարը, զոր ամբաստանեցին թէ կը փորձէ իր յայտարարութիւններով սարսափեցնել կուսակցութիւնը եւ առաջարկեցին երկրորդ նիստի մը մէջ քննել Սնոտընի զեկոյցը եւ առաջարկները: Այս առաջարկը մերժուեցաւ 53ի դէմ 72 ձայնով:*









## Հ. Յ. Դ. ՓԱՐԻԶԻ ԿՈՄԻՏԷՆ ԱՐՏԱԿԱՐԳ ԺՈՂՈՎԻ ԿԸ ՀՐԱՒԻՐԷ

*ՌՈՍՏՈՄ ենթակոմիտէն, վաղը իրիկուն ժամը 8.30ին Գրադարանի սրահը:*

*ՔՐԻՍՏԱՓՈՐ խումբը, վաղը իրիկուն, ժամը 8.30ին Ֆլորիայի վերնայարկը:*

*Այս ժողովներուն ներկայ կ'ըլլան Կ. Կ.ի ներկայացուցիչները:*

## ՄԱՐՍԷՅԼԻ Հ. Յ. Դ. ԴՊՐՈՑ

*ՎաղըՈւրբաթ իրիկուն ժամը 8.30—9.15՝ ծրագրի մեկնաբանում (Ընկ. Պ. Հիւսեան):*

*ժամը 9.30—10.15 Հայ գրականութեան պատմութիւն (Ընկ. Պ. Մինասեան):*

## BAL MASQUÉ - ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

### ԴԻՄԱԿԱՒՈՐ եւ ԱՆԴԻՄԱԿ

կազմակերպուած Պօլու Տէվրէկ եւ Շրջ. Հայր. Միութեան կողմէ 21 փետր. Շաբաթ իրիկուն ժամը 9էն մինչեւ առաւօտ Salle des Ingénieurs Civiles, 19 Rue Blanche, Métro Trinité.

Ջոյգ նուագախումբ, Թանկօ Արժանթին, ֆօքս, ժազ, օրքէսթր «Թիփիքա» իրենց ազգային տարազով, զաւեշտ, անակնկալներ, եւն.: Պարի մրցում, attraction, «Անուշ»էն քանի մը պատկեր, ճոխ եւ աժան պիւֆէ: Աճուրդ չպիտի կատարուի: Մուտք 10 ֆրանք:

## ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ — ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Այս Շաբաթ իրիկուն ժամը 9ին Salle des Fêtesի մէջ, Մարսէյլ

կազմակերպուած՝ «Արարատ» միութեան կողմէ

ի նպաստ Գրադարանին

կը մասնակցի «Սիփան» երգչախումբը

Հայկական ճաշպանտ գին 5 ֆրանք

*Շոգեկառք՝ Կառ տիւ Նորէն 8.13, 10.22*

## ԵՐԵԿՈՅԹ — ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Եօզկատի եւ Շրջ. Հայր. միութեան Իսի - լէ - Մուլինօի մասնաճիւղին կողմէ: 28 փետրուար, Շաբաթ գիշեր Իսի-լէ-Մուլինօի Թաղապետական սրահներուն մէջ:

Մանրամասնութիւնները մօտ օրէն:

## Հ. Յ. Դ.

*ՓԱՐԻԶ*

ԱԼՖՈՐՎԻԼԻ Ս. Մինասեան ենթակոմիտէի ընդհ. ժողովը այս Շաբաթ իրիկուն, սովորական հաւաքատեղին:

ԻՍԻ ԼԷ ՄՈՒԼԻՆՕԻ Ջաւարեան կոմիտէի ընդհ. ընկերական վիճաբանական ժողովը այս Շաբաթ իրիկուն ժամը 8ին, ծանօթ հաւաքատեղին:

## ՅՈՒՇԱՏԵՏ

*Զ. Ե. Ո. Մ.ի Փարիզի մասնաճիւղի վարչութիւնը ստիպողաբար ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր բոլոր անդամ-անդամուհիները, այսօր հինգշաբթի երեկոյեան ժամը 9ին Ֆլորիայի մէջ, 61* rue M. le Prince: *Անդամատոմսերը միասին բերել:*

ՀԱՅԱԳԻՏԱԿԱՆ ընկերութեան տարեկան հաւաքոյթը՝ վաղը Ուրբաթ ժամը 5ին, Արեւելեան կենդանի Լեզուներու վարժարանին մէջ, 2 rue de Lille, նախագահութեամբ փրոֆ. Շառլ Տիլի, կը խօսին փրոֆ. Մէյեէ, աբբայ Մարիէս, Տոքթ. Թորգոմեան եւ Պ. Հ. Պէրպէրեան:

## ՇԱՎԻԼԻ ԵՒ ՇՐՋԱԿԱՅՔԻ ՀԱՅՐԵՆԱԿԻՑՆԵՐՈՒՆ

Շավիլի, Վիրօֆլէյի, Վէլիզիի, Վիլ տ'Ավրիի եւ Սէվրի 20 տարեկանը լրացուցած ամէն հայրենակից մասնաւոր հրաւէր ստացած ըլլան կամ ոչ անխտիր ժողովի կը հրաւիրուին, այս կիրակի ժամը ճիշդ 2ուկէսին, խիստ կարեւոր խնդրի մը առթիւ խորհրդակցելու համար:

Հաւաքատեղին է՝ Շավիլ Puits sans vin, Ave. Ville d'Avry թիւ 20 սրճարանի ետեւի սրահը:

Կը խնդրուի անպատճառ անձամբ ներկայ ըլլալ սոյն ժողովին:

ՆԱՄԱԿ ունի (Ամերիկայէն) Խարբերդցի Պարգեւ Նաճարեան: Դիմել՝ «Յառաջ»ի վարչութեան:

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

*— Կը փնտռուի Պաթումցի Արտաշէս Զօչոբեան, հօր անուն Ներսէս, մօր անուն Զարդար: 1920ին իր 9 տարեկան հասակին Պաթումի մէջ անգլ. զբաղաւոր մը մէջ մտած է աշխատելու: 1922ին Պոլիս տեսնուած է: Այժմ իր մասին տեղեկութիւն չունինք: Լուր տուողին 1 տարեկան «Յառաջ» նուէր: Իմացնել՝* Arménak Markarian, 6 rue Boussairolles, Montpellier, (Herault) France.

*Կը խնդրուի արտասահմանի թերթերէն արտատպել:*

*— Կը փնտռուի Պրուսայի Չէնկիլէր գիւղէն Մարտիրոս Քէօսէեան որ տարագրութեան միջոցին մնացած է Րաքքայի շրջանի Արաբներուն մօտ: Իր մասին ստոյգ լուր տուողին 1000 ֆր. նուէր: Իմացնել՝* Sahac Keusseian*ի*, Latamarco 171, Corrientes, (Rép. Argentine): *Կը խնդրուի Սուրիահայ եւ Եգիպտահայ թերթերէն արտատպել:*

**Հայ** օրիորդ մը կ'ուզէ pensionով մնալ հայ պատուաւոր ընտանիքի մը մօտ, կը ստանձնէ գերմաներէնի, անգլիերէնի, ֆրանսերէնի եւ հայերէնի դասեր տալ: Դիմել՝ «Յառաջ»ի վարչութեան:




IMPRIMERIE - **MASSIS** - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H STEPHAN

Հանրապետական եւ ընկերվարական այն պարագլուխները որոնք տակաւին չեն ձերբակալուած, բազմաթիւ խորհրդակցական հաւաքոյթներ կ'ունենան, ուսումնասիրելու համար կացութիւնը:

Նախորդ իրիկուն, Մատրիտի կեդրոնին մէջ ցոյցեր տեղի ունեցան հանրապետական երիտասարդներու կողմէ:

## Պաղեստինի հրեաները դժգոհ են

Գրեր էինք թէ Պաղեստինի հոգատարութեան վերաբերեալ անգլիական Սպիտակ Գիրքը մեկնաբանող Մաքտոնալտի նամակին առթիւ, Պաղեստինի Արաբները դժգոհ մնացեր էին եւ սպառնացերեն մինչեւ իսկ պոյքօթի են թարկել Պաղեստինի հրէական բոլոր արտադրութիւնները: Հրեաներն ալ իրենց կարգին միշտ դժգոհ են: Երուսաղէմի մէջ գումարուած հրէական ազգ. խորհուրդը վերահաստատեց անցեալ հոկտեմբերի բանաձեւը եւ անգամ մը եւս դատապարտեց Սպիտակ Գրքին մէջ բացատրուած Անգլիոյ հոգատարական քաղաքականութիւնը Պաղեստինի հանդէպ:

## Հ. Յ. Դ.

*ՓԱՐԻԶ*

ԱԼՖՈՐՎԻԼԻ Ս. Մինասեան ենթակոմիտէի ընդհ. ժողովը վաղը շաբաթ իրիկուն, սովորական հաւաքատեղին:

ԻՍԻ ԼԷ-ՄՈՒԼԻՆՈՅԻ Զաւարեան կոմիտէի ընդհ. ընկերական վիճաբանական ժողովը վաղը շաբաթ իրիկուն ժամը 8ին, ծանօթ հաւաքատեղին:

*ԳԱՒԱՌ*

ՄԱՐՍԷՅԼԻ Հ. Յ. Դ. Պատ. Միութեան ժողովը վաղը շաբաթ իրիկուն ժամը 8ին 63 Rue de la Républiqueի մէջ:

## ՑՈՒՑԱՏԵՏՐ

ՓԱՐԻԶԻ Տրապիզոնի Հայր. Միութեան ժողովը վաղը շաբաթ իրիկուն ժամը 9ին Ֆլորիա ճաշարանի մէջ:

Օրակարգ՝ Նոր վարչութեան ընտրութիւն եւ պարահանդէսի մասին խորհրդակցութիւն:

ԼԻՈՆԻ Պոլսի եւ շրջ. երկսեռ միութեան տարեկան ընդհ. ժողովը այս կիրակի կէսօրէ վերջ ժամը 2ին 3րդ Թաղ. գրադարանին մէջ:

Կը խնդրուի բոլոր հայրենակիցներէ ներկայ գտնուիլ:

ԱԼՖՈՌՎԻԼԻ Ս. Պօղոս Պետրոս եկեղեցիի Օծման տարելիցին առթիւ Գեր. Վռամշապուհ եպիս. Քիպարեան հրաւիրուած է այս կիրակի յատուկ Ս. Պատարագ մատուցանել: Կը հրաւիրուի հայ հասարակութիւնը:

*Հոգաբարձութիւն Ալֆորվիլի* (կնիք)

## ՇԱՎԻԼԻ ԵՒ ՇՐՋԱԿԱՅՔԻ ՀԱՅՐԵՆԱԿԻՑՆԵՐՈՒՆ

Շավիլի, Վիրօֆլէյի, Վէլիզիի, Վիլ տ'Ավրիի եւ Սէվրի 20 տարեկանը լրացուցած ամէն հայրենակից մասնաւոր հրաւէր ստացած ըլլան կամ ոչ անխտիր ժողովի կը հրաւիրուին, այս կիրակի ժամը ճիշդ 2ուկէսին, խիստ կարեւոր խնդրի մը առթիւ խորհրդակցելու համար:

Հաւաքատեղին է' Շավիլ Puits sans vin, Ave. Ville d'Avry թիւ 20 սրճարանի ետեւի սրահը:

Կը խնդրուի անպատճառ անձամբ ներկայ ըլլալ սոյն ժողովին:

## ԳՐԱԿԱՆ ԱԿՈՒՄԲ

71, Ave. Kléber վաղը, իրիկուն ժամը 9ին կը խօսի *Շաւարշ Միսաքեան*, նիւթ ունենալով «*ՅՈՒՆԱՀԱՅ ԳԱՂՈՒԹԸ*»

## MONDE

Միջազգային մեծ շաբաթաթերթ՝ գրական, գեղարուեստական, գիտական եւ ընկերային տեղեկութեանց

*Կը հրատարակուի ամէն ուրբաթ: Գին 1.50 ֆրանք, տարեկան բաժնեգին 50 ֆր., վեցամսեայ՝ 25 ֆրանք (Ֆրանսայի համար):*

*Հասցէ.*— Administration de Monde», *50* Rue Etienne Marcel, Paris (2e).

Հայ օրիորդ մը կ'ուզէ pensionով մնալ հայ պատուաւոր ընտանիքի մը մօտ: Կը ստանձնէ գերմաներէնի, անգլիերէնի, ֆրանսերէնի եւ հայերէնի դասեր տալ: Դիմել՝ «Յառաջ»ի վարչութեան:

EMPIRE Սիւգիք-Հօլ՝ 37 Av. Wagram





## Հ. Յ. Դ. ՓԱՐԻԶԻ ԿՈՄԻՏԷՆ ԱՐՏԱԿԱՐԳ ԺՈՂՈՎԻ ԿԸ ՀՐԱՒԻՐԷ

*ՌՈՍՏՈՄ ենթակոմիտէն, այս իրիկուն ժամը 8.30ին Գրադարանի սրահը:*

*ՔՐԻՍՏԱՓՈՐ խումբը, այս իրիկուն, ժամը 8.30ին Ֆլորիայի վերնայարկը:*

*Այս ժողովներուն ներկայ կ'ըլլան Կ. Կ.ի ներկայացուցիչները:*

## ԵՐԵԿՈՅԹ — ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

### ՓԵՏՐՈՒԱՐ 18Ի ԱՌԹԻՒ

*Կազմակերպուած Հ. Յ. Դ. Փարիզի կոմիտէի կողմէ*

*Մարտ 28ին ժամը 8.30էն մինչեւ լոյս, Սալ Փլաս տէ Ֆէթի մէջ*

95 Bld. August Blanqui *մէթրօ* Blanche

*Մանրամասնութիւնները մօտ օրէն*

## BAL MASQUÉ - ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

### *ԴԻՄԱԿԱՒՈՐ եւ ԱՆԴԻՄԱԿ*

կազմակերպուած Պօլու Տէվրէկ եւ Շրջ. Հայր. Միութեան կողմէ վաղը Շաբաթ իրիկուն ժամը 9էն մինչեւ առաւօտ

Salle des Ingénieurs Civiles, *19* Rue Blanche, Métro Trinité.

Ջօյգ նուագախումբ, Թանկօ Արժանթին, ֆօքս, ժազ, օրքէսթր «Թիփիքա» իրենց ազգային տարազով, զաւեշտ, անակնկալներ, եւն.:

Պարի մրցում, attraction, «Անուշ»էն քանի մը պատկեր, ճոխ եւ աժան պիւֆէ: Աճուրդ չպիտի կատարուի: Մուտք 10 ֆրանք:

## ԱՊՐԻԼ ՏԱՍՆԸՄԷԿԸ

Զ. Ե. Ռ. Միութիւնը Ապրիլ Տասնըմէկը կը տօնէ Փարիզի մէջ

*Ապրիլ 27ին, Կիրակի երեկոյ, Սալ տը Կրընէլի մէջ*

## ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ — ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Վաղը Շաբաթ իրիկուն ժամը 9ին Salle des Fêtesի մէջ, Սարսէլ

կազմակերպուած՝ «Արարատ» միութեան կողմէ

*Կը նախագահէ եւ կը խօսի Պ. ԵՐՈՒԱՆԴ ՏԷՐ ԱՆԴՐԷԱՍԵԱՆ*

ի նպաստ Գրադարանին

կը մասնակցի «Սիփան» երգչախումբը

Հայկական ճագպանտ Գին 5 ֆրանք

*Շոգեկառք՝ Կառ տիւ Նօրէն 8.13, 10.22*

## ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

Լիոնի Հ. Յ. Դ. Կուկունեան խումբի կողմէ

Հովանաւորութեամբ Լիոնի Հ. Յ. Դ. կոմիտէի

կը ներկայացուի՝ ՎԱՐԴԱՆ ՄԱՄԻԿՈՆԵԱՆ

14 Մարտ Շաբաթ իրիկուն ժամը 8ին Emile Zolaի սրահին մէջ:

Կը խնդրուի նկատի ունենալ այդ թուականը:

## ԵՐԵԿՈՅԹ ՎԻԷՆԻ ՄԷՋ

կազմակերպուած Հ. Յ. Դ. Խաժակ ակումբի վարչութեան կողմէ: վաղը իրիկուն ժամը 7.30ին Հ. Յ. Դ. Խաժակ ակումբին մէջ: կը ներկայացուի երկու զաւեշտներ՝ «*ՎԵՑՈՒԿԷՍ ՊՕՐՏԻՆ ԺԱՌԱՆԳ ՄՆԱՑԱԾ ՍՆՏՈՒԿԸ*» *եւ* «*ԽԵՉՕԻ ԹՈՒՋԸ*»:

Արտասանութիւններ փոքրիկներու կողմէ: Մուտք 2 ֆրանք

## «ՓԵՏՐՈՒԱՐ 18» ՓԻՒԺԷԻ ՄԷՋ

*Կազմակերպուած Հ. Յ. Դ. Վռամեան խումբի կողմէ*

*Այս կիրակի կէսօրէ վերջ ժամը 2.30ին*

*Կը խօսի ԸՆԿԵՐ Ա. ԱՔՕԵԱՆ*

*Երգ, նուագ, եւ արտասանութիւն*

## ԵՐԵԿՈՅԹ

*Կազմակերպուած Մարսէյլի Բալուի Հայր. Միութեան կողմէ Վաղը Շաբաթ իրիկուն ժամը 9ին, Րիւ Թափի Վէռ, Սալօն Էսքանեոլի մէջ* *Մուտքը ազատ է*




IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS

208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H STEPHAN

# Հ. Յ. Դ.

*ՓԱՐԻԶ*

*ՀՐԱՉԴԱՆ խումբի ժողովը այս Երեքշաբթի իրիկուն ժամը 8.30ին* Ave. des Gobelins*ի եւ* rue des Gobelins *փողոցներու անկիւնի սրճարանին վերնայարկը։*

ԱԼՖՈՐՎԻԼԻ Ս. Մինասեան ենթակոմիտէի ընդհ. ժողովըայսօր շաբաթ իրիկուն, սովորական հաւաքատեղին։

ԻՍԻ-ԼԷ-ՄՈՒԼԻՆՕԻ Զաւարեան կոմիտէի ընդհ. ընկերական վիճաբանականժողովըայսօրշաբաթ իրիկուն ժամը 8ին, ծանօթ հաւաքատեղին։

*ԳԱՒԱՌ*

ՄԱՐՍԷՅԼԻ Հ. Յ. Դ. Պատ. Միութեան ժողովը այսօր շաբաթ իրիկուն ժամը 8ին 63 Rue de la Républiqueի մէջ։

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՓԱՐԻԶԻ Տրապիզոնի Հայր. Միութեան ժողովը այսօրշաբաթ իրիկուն ժամը 9ին Ֆլորիա ճաշարանի մէջ:

Օրակարգ՝ նոր վարչութեան ընտրութիւն եւ պարահանդէսի մասին խորհրդակցութիւն։

ԼԻՈՆԻ Պոլուի եւ շրջ. երկսեռ Միութեան տարեկան ընդհ. ժողովը վաղը կիրակի կէսօրէ վերջ ժամը 2ին 3րդ Թաղ. գրադարանին մէջ։

Կը խնդրուի բոլոր հայրենակիցներէ ներկայ գտնուիլ։

ԱԼՖՈՐՎԻԼԻ Ս. Պօղոս Պետրոս եկեղեցիի օծման տարելիցին առթիւ գեր. վ. Համշապուհ եպիս. Քիպարեան հրաւիրուած է վաղը կիրակի յատուկ Ս. Պատարագ մատուցանել: կը հիւաիրուի հայ հասարակութիւնը:

*Հոգաբարձութիւն Ալֆորվիլի*
(կնիք)

## ԳՐԱԿԱՆ ԱԿՈՒՄԲ

71, Ave. Kléber, այս իրիկուն ժամը 9ին կը խօսի *Շաւարշ Միսաքեան*, նիւթ ունենալով *«ՅՈՒՆԱՀԱՅ ԳԱՂՈՒԹԸ»*

## ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

*Տեսինի Սեփ. Նահանգ. Ուսումն. միութեան կողմէ Վարդանանցի առթիւ, 1 մարտ Կիրակի ժամը 2ին։ Կը խնդրուի նկատի ունենալ այդ թուականը:*

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Տէր եւ Տիկին Լեւոն Գայթանճեան, Տէր եւ Տիկին Մինաս Գայթանճեան (Լիոն), Գրիգոր եւ Ղեւոնդ Գայթանճեան եղբարք (Լիոն), Տէր եւ Տիկին Սահակ Քէհեաեան, Պ. Արմենակ Սապօնճեան (Երեւան), Այրի Տիկին Հռիփսիմէ Արիստակէսեան եւ զաւակունք (Թիֆլիս) Տէր եւ Տիկին Մկրտիչ Թէրզեան(Նիւ-Եորք), խորին շնորհակալութիւն կը յայտնեն ամէն անոնց որոնք անձամբ կամ նամակով իրենց ցաւակցութիւնը յայտնեցին իրենց մօր, եղբօր, եղբօրկնոջ, հօրեղբօր կնոջ եւ զոքանչին

*Կարնեցի Այրի Տիկին* ՄԱՔՐՈՒՀԻ ԳԱՅԹԱՆՃԵԱՆԻ մահուան առթիւ:

*Մարսէյլ* *14 փետր. 1931*

## ՇԱՎԻԼԻ ԵՒ ՇՐՋԱԿԱՅՔԻ ՀԱՅՐԵՆԱԿԻՑՆԵՐՈՒՆ

Շավիլի, Վիրօֆլէյի, Վէլիզիի, Վիլ տ'Ավրիի եւ Սէվրի 20 տարեկանը լրացուցած ամէն հայրենակից մասնաւոր հրաւէր ստացած ըլլան կամ ոչ անխտիր ժողովի կը հրաւիրուին, վաղը կիրակի ժամը ճիշդ 2ուկէսին, խիստ կարեւոր խնդրի մը առթիւ խորհրդակցելու համար:

Հաւաքատեղին է՝ Շավիլ Puits sans vin, Ave. Ville d'Avry թիւ 20 սրճարանի ետեւի սրահը:

Կը խնդրուի անպատճառ անձամբ ներկայ ըլլալ սոյն ժողովին:

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

*— Կը փնտռուի Խանիացի (Մարաշ) Գրիգոր Պարսամեան կը կարծուի թէ 1925ին կը գտնուէր Պէյրութ։ Իմացնել իր քրոջ Տիկ. Կատարինէ Պլուզեանի,* 52 rue Centrale, Le Cannet (A. M.) France.

*— Կը փնտռուի Պաթումցի Արտաշէս Չուխուրեան, հօր անուն Նէրսէս, մօր անուն Զարդար։ 1920ին իր 9 տարեկան ատենէն Պաթումի մէջ անգլ. զրահաւոր մը մէջ մտած է աշխատելու։ 1922ին Պոլիս տեսնուած է։ Այժմ իր մասին տեղեկութիւն չունինք։ Լուր տուողին 1 տարեկան «Յառաջ» նուէր։ Իմացնել՝* Arménak Markarian, 6 rue Boussairolles, Montpellier, (Herault) France.

*Կը խնդրուի արտասահմանի թերթերէն արտատպել։*



## «ՓԵՏՐՈՒԱՐ 18» ՓԻԻԺԷԼԻ ՄԷՋ

*Կազմակերպուած Հ. Յ. Դ. Վռամեան խումբի կողմէ*
*Վաղը կիրակի կէսօրէ վերջ ժամը 2.30ին*
*Կը խօսի ԸՆԿԵՐ Ա. ԱԲՕԵԱՆ*
*Երգ, նուագ, եւ արտասանութիւն*

## BAL MASQUÉ - ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

*ԴԻՄԱԿԱՒՈՐ եւ ԱՆԴԻՄԱԿ*

կազմակերպուած Պօլու Տէվրէկ եւ Շրջ. Հայր. Միութեան կողմէ
Այսօր Շաբաթ իրիկուն ժամը 9էն մինչեւ առաւօտ
Salle des Ingénieurs Civiles, 19 Rue Blanche, Métro Trinité.

Ջոյգ նուագախումբ, Թանկօ Արժանթին, ֆօքս, ժազ, օրքէսթր «Թիփիքա» իրենց ազգային տարազով, զաւեշտ, անակնկալներ,եւն.։ Պարի մրցում, attraction, «Անուշ»էն քանի մը պատկեր, ճոխ եւ աժան պիւֆէ։ Աճուրդ չպիտի կատարուի։ Մուտք 10 ֆրանք:

## ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ — ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Այսօր Շաբաթ իրիկուն ժամը 9ին Salle des Fêtesի մէջ, Սարսէլ
կազմակերպուած՝ «Արարատ» միութեան կողմէ
*Կը նախագահէ եւ կը խօսի Պ. ԵՐՈՒԱՆԴ ՏԷՐ ԱՆԴՐԷԱՍԵԱՆ*
ի նպաստ Գրադարանին
կը մասնակցի «Սիփան» երգչախումբը
Հայկական ճագպանտ — գին 5 ֆրանք
*Շոգեկառք՝ կառ տիւ Նօրէն 8.13, 10.22*

## ԵՐԵԿՈՅԹ ՎԻԷՆԻ ՄԷՋ

կազմակերպուած Հ. Յ. Դ. Խաժակ ակումբի վարչութեան կողմէ: Այս իրիկուն ժամը 7.30ին Հ. Յ. Դ. Խաժակ ակումբին մէջ: կը ներկայացուի երկու զաւեշտներ՝ *«ՎԵՑՈՒԿԷՍ ՊՕՐՏԻՆ ԺԱՌԱՆԳ ՄՆԱՑԱԾ ՍՆՏՈՒԿԸ» եւ «ԽԵՉՕԻ ԹՈՒՋԸ»։*

Արտասանութիւններ փոքրիկներու կողմէ։ — Մուտք 2 ֆրանք

## ԵՐԵԿՈՅԹ

*Կազմակերպուած Մարսէյլի Բալուի Հայր. Միութեան կողմէ*
*Այսօր Շաբաթ իրիկուն ժամը 8ին, Րիւ Թափի Վէո,*
*Սալօն Լէսբանեոլի մէջ* — *Մուտքը ազատ է*

## ՄԻԱՑԵԱԼ - ՊԱՐԱՀԱՆԴԷՍ ԴԻՄԱԿԱՒՈՐ եւ ԱՆԴԻՄԱԿ

### ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԱԾ՝ ՀԱՅ ԿԵԱՆՔ ԹԵՐԹԻ ԵՒ ՏՐԱՄԱԹԻՔԻ ԿՈՂՄԷ

28 փետրուար շաբաթ իրիկուն ժամը 9էն մինչեւ լոյս, HAROLAի շքեղ սրահներուն մէջ
3 Rue la Vieuville, մէթրօ Abbesses
*Սիրայօժար մասնակցութեամբ ՅԱՔԻՐ ԹԱՀՐԱ ՊԷՅԻ եւ ԼԻԼԱյի*
երկու մեծ նուագախումբ — Արեւելեան նուագ
գեղեցիկ մրցանակներ լաւ ծպտուածներու եւ լաւ պարողներու
*Մուտք՝ այր եւ կին՝ 25 ֆրանք, առանձին 15 ֆրանք*
Տոմսերը կը ծախուին բոլոր ճաշարանները եւ «Հայ կեանք»ի խմբագրատունը 221 rue Lafayette Paris (10)

կարդացա՞ծ եւ օտարներուն յանձնարարա՞ծ էք

## ԳՐԻՄԻԹԷԼԻՆ «A L'OMBRE DE LA CIVILISATION» ՀԱՅԿԱԿԱՆ ԲՐՕՔԱԿԱՆՏԻ ՎԷՊԸ

(Ֆրանսացի ամենակարեւոր անձնաւորութիւններու եւ թերթերու կողմէ գնահատուած)

կը ծախուի հրատարակչատունը՝ 42 Rue Saint-Jacques, Paris (Սօրպօնի մօտ)։ բոլոր ֆրանսական մեծ գրավաճառներու մօտ եւ Հր. Սամուէլի գրատունը: գին՝ 15 ֆրանք։



EMPIRE Մեւզիք-Հոլ՝ 37 Av. Wagram

IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris

Le Gérant H STEPHAN

IMPRIMERIE - **MASSIS** - ÉDITIONS

208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H STEPHAN

*Լաւատեղեակ շրջանակներ կը հաւաստեն թէ խորհրդային իշխանութիւնները որոշած են 1932էն սկսեալ արտածել նաև ռուսական թուղթ։ Եթէ ուրեմն ներկայիս փայտի գործատէրերն են որ կը դժգոհին, վաղը կարգը պիտի գայ թուղթի արտադրիչներուն։*



## ՄԱՐՍԷՅԼԻ Հ. Յ. Դ. ԴՊՐՈՑ

Այսօր ժամը 8.30—9.15 ծրագրի մեկնաբանում (ընկ. Հիւսեան)։ 9.30—10.15 Հայաստանի աշխարհագրութիւն (ընկ. Ազգին)։



## Հ. Յ. Դ.

*ԴԱՒԱՌ*

*ՄԱՐՍԷՅԼԻ Ռոստոմ Ենթկ. ընդհանուր ժողովը՝ վաղը երեկոյ ճիշդ ժամը 8.30ին, սովորական հաւաքատեղին։ Կարեւոր օրակարգ։ Ներկայանալ անդամատետրով։*

*Հ. Յ. Դ. Մարսէյլի Քրիստափոր Ենթակոմիտէի ընկերական ժողովը, վաղը երեկոյ ժամը 8.30ին, սովորական հաւաքատեղին։ Կարեւոր օրակարգ։ Ներկայանալ անդամատետրով։*

## ՆԱՄԱԿԱՏՈՒՓ

*ՍՏԱՑԱՆՔ*

Անիէռ, Յ. Ճ.— 70։
Մարսէյլ, Ն. Կ.— 140։
Կրընոպլը, Միսք.— 35։
Իսի-լէ-Մուլինօ, Խ. Ե.— 35։
Լիոն, Գործ.— 1250։
Մոնփելիէ, Ա. Մ.— 50։
Տէր Զօր, Մ. Ս.— 70։ Սկսանք ղրկել Գ. Գ.ի։
Սէն Մօրիս, Գործ.— 140,
Ռոման, Յ. Վ.— 70։
Թել էպիատ, Մ. Մ.— 140։
Ռուան, Կ. Պ.— 35։
Քոկոլէն, Ֆէրհ.— 35։
Լիվրի Կարկան, Ս. Ա.— 50։

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

*— Կը փնտռուի Խառնիացի (Մարաշ) Գրիգոր Պարսամեան կը կարծուի թէ 1925ին կը գտնուէր Պէյրութ։ Իմացնել իր քրոջ Տիկ. Կատարինէ Պլուզեանի,* 52 Rue Centrale, Le Cannet (A. M.) France.

*— Ատաբազարցի Խաչիկ Կուկուկեան կը փնտռէ իր հայրը Անդրանիկ Կուկուկեան, մայրը՝ Տիգրանուհի, քոյրը՝ Հոգինէ, մեծ մայրը՝ Փարիզ։ Պոլսէն լուր առնուած է թէ այժմ կը գտնուին Յունաստ։ Իմացնել Խաչիկ Կուկուկեանի,* Couvent Arménien, Jérusalem, Palestine.

*— Կը փնտռուի Պրուսայի Չէնկիլէր գիւղէն Մարտիրոս Քէօսէեան որ տարագրութեան միջոցին մնացած է Րաքքայի շրջանի Արաբներուն մօտ։ Իր մասին ստոյգ լուր տուողին* 1000 *ֆր. նուէր։ Իմացնել՝* Sahac Keusseian*ի*, Latamarco 171, Corrientes, (Rép. Argentine)։ *Կը խնդրուի Սուրիահայ եւ Եգիպտահայ թերթերէն արտատպել։*

— Կը փնտռուի Մարաշցի Սեդրաք Ինկիլիզեան, հօր անուն՝ Յակոբ, մօր անուն՝ Ովսաննա, 1916ին կը գտնուէր Հալէպի որբանոցը, ուսկից փոխադրուած է Պոլիս։ Իմացնել Միսաք Ինկիլիզեանի 6844 C. S. P, 4ième Rgt. Etrauger, Marrakach, Maroc.

## ԾԱԽՈՒԻ Է ԱՅՎԱԶՈՎՍԿԻԻ ՄԷԿ ՆԿԱՐԸ

*Կը ծախուի Այվազովսկիի լաւագոյն նկարներէն մին, 1851ին նկարուած։ Կը պատկանէր Աղեքսանդր Բ. Ռուսաց կայսեր համահարզին՝ Նիքոլա Կրասնակուտսկիի հազարապետին։*

*Բարձրութիւնն է 88 սանթիմեդր. լայնքն է 1.35 մեդր, կը ներկայացնէ Սեւ ծովի եզերքը, Գուրզուֆ ըսուած հռչակաւոր ամառանոցը՝ լուսնակ գիշերով։*

*Փափաքելի էր որ մեր ազգային գեղարուեստից սիրողները գնէին եւ թոյլ չտային որ օտարանայ այս հրաշագեղ նկարը մեր հանճարեղ նկարչին։*

*Նկարը կը գտնուի Միլան (Իտալիա), մանրամասնութեանց եւ գնի մասին գիմել Մխիթարեան վարժարան, Միլան,* 62 Viale Umbria. Collegio Armeno. Milano, Italia.




IMPRIMERIE - **MASSIS** - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H STEPHAN

Հանրապետութեան պահպանման օրէնքին համաձայն, Հանրապետութեան եւ յեղափոխութեան դէմ եղած յանցանքները Էնկիւրի, Պոլիս, Իզմիր եւ այս կարգի կարեւոր կեդրոններու Եղեռնադատ ատեաններուն առջեւ պիտի տեսնուին: Այս տեսակ դատերու համար, Եղեռնադատ ատեանները դուրսէն երկերկու անգամ ալ պիտի առնեն: Հանրապետութեան պահպանման օրէնքը մշտական չպիտի ըլլայ. հինգ տարի պայմաժամ պիտի ունենայ, բայց ի հարկին կարելի պիտի ըլլայ երկարաձգել Ազգային Ժողովի որոշումով:

## Քանի՞ հոգի խնուած են

Պատերազմական Ատեանի հարցաքննիչ մարմինը մինչեւ 15 փետրուար, 424 ամբաստանեալներու թուղթերը քննած է: Ասոնցմէ 233 հոգիի մասին դատ ըլլալու, 122 հոգիի մասին դատ չըլլալու եւ 69 հոգիի մասին ալ գործը ատեանին պարտականութենէն դուրս ըլլալու որոշում տրուած է: Ներկայիս, հարցաքննիչ ատեանին կողմէ 74 ամբաստանեալներու թուղթերը կը քննուին:

## Դաւադրական նոր կազմակերպութիւններ

Պոլսական թերթերը կը հաղորդեն թէ դաւադրական նոր կազմակերպութիւն մըն ալ երեւան ելած է Պալըքէսիրի մէջ: Իսկ սուրիական «Պէշիր» թերթը որ կը հրատարակուի Յիսուսեաններու կողմէ, հետեւեալ լուրը կը հաղորդէ.— Թուրքիայէն առնուած վերջին լուրերու համաձայն, բռնուած է գաղտնի դաւադրական ընկերութիւն մը, «Մենք Իսլամ» անունով, որուն նպատակն է Մուսթաֆա Քէմալէն սկսելով բոլոր պետական մարդիկը մէկիկ մէկիկ մահափորձի ենթարկել:

## Գերմաններ դէպի Ռուսիա

Խորհ. Միութեան Տնտես. Խորհուրդը հրաւէր ուղղեց գերման բազմաթիւ գործարանատէրերու որ Ռուսիոյ մէջ կատարեն ուսումնասիրական ճամբորդութիւն մը: Ճամբորդները պիտի ընդունուին գործավարներու խորհուրդի նախագահ՝ Մոլոթովի, արտաքին գործավար Լիթվինովի եւ արտաքին առեւտուրի գործավար Միկոյեանի կողմէ:

## Հէնտըրսըն Փարիզի մէջ

Հէնտըրսըն, Անգլիոյ արտաքին նախարարը, նաւային մասնագէտներու ընկերակցութեամբ Փարիզ հասաւ առջի օր: Անգլիոյ նախարարին այս յանկարծական ժամանումը Փարիզ՝ անակնկալի բերած է քաղաքական շրջանակները: Հարցը կը դառնայ ծովային սպառազինութեանց սահմանափակման վերաբերեալ բանակցութիւններու շուրջ, որոնք կը շարունակուին ատենէ մը ի վեր, Անգլիոյ եւ Ֆրանսայի միջեւ: Հէնտըրսընի ժամանումէն անմիջապէս յետոյ, քաղաքական եւ ծովային արհեստագիտական հարցերու շուրջ տեսակցութիւններ տեղի ունեցան Անգլիոյ եւ Ֆրանսայի ներկայացուցիչներուն միջեւ:

## 70,000 զէնքեր կը հսկեն ընտրութեան

Պատերազմական քաղաքի մը երեւոյթն առած է Չիքակօ, ուր 70,000 զինեալ մարդ ոտքի ելած է դիմագրաւելու համար ամէն հաւանականութիւն, քաղաքապետին ընտրութեան առթիւ:

Ոստիկաններ, ոստիկան-զօրքեր եւ ամերիկեան լէգէոնի նախկին մարտիկներ հրահանգ ստացած են հսկելու քուէարկութեանց եւ դիմադրելու համբաւաւոր մաքսանենգ Քափոնի մարդոց, եթէ փորձեն կռիւ ու խռովութիւն հանել: Որովհետեւ այս աւազակը ջերմ կուսակից է նախկին քաղաքապետին, որ կրկին թեկնածութիւնը դրած է ընդդէմ դատաւոր Ճոն Լիլի:
















IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS

208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H STEPHAN








## Հ. Յ. Դ.

### ՓԱՐԻԶ

Անիէռ-Պուա Քոլոնպի Զէյթուն կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները, 79 Rue des Chambard սրճարանը, այս Ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին: Կարեւոր օրակարգ:

### ԳԱՒԱՌ

ՄԱՐՍԷՅԼԻ Ռոստոմ Ենթկ. ընդհանուր ժողովը՝ այս երեկոյ ճիշդ ժամը 8.30ին, սովորական հաւաքատեղին: Կարեւոր օրակարգ: Ներկայանալ անդամատետրով:

Հ. Յ. Դ. Մարսէյլի Քրիստափոր Ենթակոմիտէի ընկերական ժողովը, այս երեկոյ ժամը 8.30ին, սովորական հաւաքատեղին: Կարեւոր օրակարգ: Ներկայանալ անդամատետրով:

## ՑՈՒՇԱՏԵՏՐ

Զ. Ե. Ո. Միութեան Փարիզի Վահագն գրադարանին դասախօսութիւնը վաղը Հինգշաբթի երեկոյ ժամը 9ին Ֆլօրիայի մէջ: Կը խօսի Օր. Արաքսի Թորոսեան Տրապիզոնցի Անթառամ վէպին մասին: Մէկ ժամ սինէմա, ջարլի Չէփլին փոլիամէն: Կը հրաւիրուին անդամներն ու համակիրները:

## ՆԱՄԱԿԱՏՈՒՓ

### ՍՏԱՑԱՆՔ

Լա Սիօթա, Գ. Ա.— 100:
Լէ Վան, Փիր.— 35:
Շքոտրա, Յ. Ե.— 100:
Նիկոսիա, Ա.— 121:
Սէն Շամոն, Գործ.— 211.60:
Մէշէզ.— 200:
Մարսէյլ, Գործ.— 1060:

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— Կը փնտռուին Գրչէհիրի Գայապաշ թաղէն Տիգրան Կարապետ, Հայկուհի եւ Նուէր Պալըքճեան, որոնք Կիլիկիոյ պարպումէն յետոյ մեկնած են Փարիզ: Իմացնել իրենց քեռորդւոյն Կարապետ Թիւթիւնճեանի, B. Postale 75 Adana, Turquie.

— Կը փնտռուի Խառնիացի (Մարաշ) Գրիգոր Պարսամեան կը կարծուի թէ 1925ին կը գտնուէր Պէյրութ: Իմացնել իր քրոջ Տիկ. Կատարինէ Պլուզեանի, 52 Rue Centrale, Le Cannet (A. M.) France.

— Ատաբազարցի Խաչիկ Կուկուկեան կը փնտռէ իր հայրը Անդրանիկ Կուկուկեան, մայրը՝ Տիգրանուհի, քոյրը՝ Հոգինէ, մեծ մայրը՝ Փարիզ: Պոլսէն լուր առնուած է թէ այժմ կը գտնուին Ֆրանսա: Իմացնել Խաչիկ Կուկուկեանի, Couvent Arménien, Jérusalem, Palestine.

— Կը փնտռուի Պրուսայի Չէնկիլէր գիւղէն Մարտիրոս Քէօսէեան որ տարագրութեան միջոցին միացած է Րաքքայի շրջանի Արաբներուն մօտ: Իր մասին ստոյգ լուր տուողին 1000 փր. նուէր: Իմացնել՝ Sahac Keusseianի, Latamarco 171, Corrientes, (Rép. Argentine): Կը խնդրուի Սուրիահայ եւ Եգիպտահայ թերթերէն արտատպել:

— Կը փնտռուի Մարաշցի Սեդրաք Ինկիլիզեան, հօր անունը՝ Յակոբ, մօր անունը՝ Ովսաննա, 1916ին կը գտնուէր Հալէպի որբանոցը, ուսկից փոխադրուած է Պոլիս: Իմացնել Միսաք Ինկիլիզեանի 6844 C. S. P, 4ième Rgt. Etrauger, Marrakach, Maroc.

## ՆՈՒԷՐՆԵՐ ՊԱՍՐԱՅԻ ԵՐԻՏ. ՄԻՈՒԹԵԱՆ ԳՐԱԴԱՐԱՆԻՆ

Թ. Հ. Միութիւն 15 ռուփի եւ 2 նկար, Տ. Ղուկասեաններ 26 ռ., Յ. Մանուկեան 10 ռ. եւ «Յառաջ» օրաթերթ (մէկ տարուան) եւ 6 կտոր գիրք, Տ. Օ. Յովհաննէսեան 10, Ամիրխանեան եղբայրք 10, Գ. Յակոբեան 5 եւ 2 նկար, Մ. Կարապետեան մէկ տարուան «Հայրենիք» օրաթերթ, Պ. Յովսէփեան 30 կտոր գիրք եւ լամբ, Ս. Խանանեան, Օ. Կապուտեան, Վ. Վարդանեան. Կ. Մուխթար: Օ. Մաթոսեան 5ական ռուփի, Օ. Կուլօղլեան 5 եւ մէկ գիրք, Ս. Լ. Օհաննէսեան, Պ. Միհրանեան, Յ. Պետրոսեան, Յարութիւնեան Մամբրէ, Ա. Գրիգորեան, Գ. Ստեփանեան, Ա. Աբգարեան, Պ. Վասիլեան, Մ. Կարապետեան 5ական, Տիկ. Հեղինէ Պետրոսեան 3, Եղիազարեան եղբարք 10, Տիկ. Եղ. Կարապետեան սեղանի սփռոց (ձեռագործ), Ե. Աւոեան 1 պատի ժամացոյց, Յ. Համբարձումեան 2, Տիկ. Արևալոյս Յովհաննէսեան, Յ. Ասլանեան, Ա. Վարդանեան, Հ. Կարապետեան, փոքրիկն Պօրիս Աւետիսեան, Հնգիկ պարոն մը 3ական, Տիկ. Շնորհիկ Աւետիսեան 2, Մ. Պաղտասարեան 2, Օր. Մաղիկ եւ Օր. Լուսիկ (14) պատուհաններու վարագոյր, Դ. Մուրատեան, Տիկ. Վարդանուշ եւ Օր Ազնիւ Մուրատեան 2 ռուփի եւ 25 ռ, արժողութեամբ բրեղէններ:

(Շար.)

պէր Իտալիոյ կողմէ։ Ֆրանսա եւ Անգլիա համաձայնած են այս կէտին շուրջ։ Անգլիա կ'աւելցնէ իր ընդծովեայ ուժերու տարողութիւնը, իսկ Ֆրանսա իր թեթեւ յածանաւերը։ Կը մնայ Իտալիոյ հետ համաձայնութեան գալու խնդիրը, որուն կարգադրութեան կ'աշխատի այս միջոցիս Հէնտըրսըն Անգլիոյ արտաքին նախարարը՝ Հռոմի մէջ։

## Յոյն-պուլկար վէճը

ԱԹԷՆՔ, 24 փետր.— Պուլկարիոյ կողմէ Անգլիոյ արտաքին նախարարին Հէնտըրսընի տրուած պատասխանին առթիւ, կիսապաշտօնական շրջանակները կը յայտնեն թէ, եթէ Պուլկարիա յամառի իր անհաշտ վերապահումներուն մէջ, Յունաստան պիտի կրնայ դիմել Լահէյի Միջազգային ատեանին։

Յոյն կառավարութիւնը կ'ուսումնասիրէ Պուլարիոյ հանդէպ իր կարգ մը յանձնառութիւնները չկատարելու իրաւական միջոցները, նկատելով որ Պուլկարիա արդէն չի կատարեր իր յանձնառութիւնները։

## Անգործութիւնը Խորհրդարանին առջեւ

Մէկ քանի օր առաջ գրեր էինք թէ ֆրանսական Խորհրդարանի ելեւմտական յանձնախումբը ընդունելէ յետոյ ընկերվարականներու պահանջը — 100 միլիոն յաւելուածական վարկ յատկացնել անգործներուն,—գումարը իջեցուցեր էր 25միլիոնի կառավարութեան ներկայացուցչին գեկոյցին վրայ։ Հարցը ներկայացաւ Խորհրդարան, ուր աշխատանքի նախարարը տուաւ հետեւեալ տեղեկութիւնները·—

Նախապէս մտադրուած էր 13 միլիոն ֆրանք յատկացնել։ Հարցը կը բովանդակէ երեք կէտեր, — 1. Անգործներու թիւը, 2. Նպաստի սակը եւ 3. Անգործութեան սնտուկներուն՝ կառավարութեան մասնակցութեան չափը։ Կառավարութիւնը ցարդ կը մասնակցէր 100ին 33 համեմատութեամբ։ Ներկայիս այս սակը կը բարձրանայ 100ին 50ի։ Կառավարութիւնը նկատի առած է ապրուստի սղութիւնը եւ պիտի բարձրացնէ նպաստի սակը։ Այս պայմաններուն մէջ, անօգուտ կը նկատէ 100 միլիոն ֆրանք յատկացնել։

Սակայն ընկերվարական յայտնի ղեկավար Լէօն Պլումի բացատրութիւններուն վրայ Խորհրդարանը քուէարկեց 100 միլիոն ֆրանքի նոր վարկ մը։

## Մեծ զօրահանդէս Թեհրանի մէջ

Թէհրանէն կը հեռագրեն թէ փետրուար 23ին Շահը մեծ զօրահանդէս մը կատարեց, որուն կը մասնակցէին երկու կիսաբաժին հետեւակազօրք, չորս գունդ հեծելազօրք, հրետաձիգ զօրամասեր եւ 15 օդանաւեր։ Պարտաւորիչ զինուորութենէն ի վեր, առաջին զօրահանդէսն է այս։ Զինուորները մեծ մասով երիտասարդներ էին, լաւ հագուած եւ քաջավարժ։ Զօրահանդէսը վերջացաւ Շահին առջեւ կատարուած անցքով մը, մինչ նուագախումբերը կը հնչէին եւ օդանաւերը կը սաւառնէին։

















## Հ. Յ. Դ.

ՓԱՐԻԶ

ԱՆԻԷՌ-Պուա Քոլոմպի Զէյթուն կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները, 79 Rue des Chambards սրճարանը, այս Ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին։ Կարեւոր օրակարգ։

ԱՂԲԻՒՐ ՍԵՐՈԲ խումբի ժողովը այս Շաբաթ իրիկուն ժամը 8.30ին 184 Ave. d'Italie. Մէթրօ Փօրթ տ'Իթալի։

ԳԱՒԱՌ

ԼԻՈՆԻ Կուկունեան խումբի ժողովը վաղը Ուրբաթ իրիկուն ժամը 8ին Գրադարանին մէջ։

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

Ձ. Ե. Ռ. Միութեան Փարիզի Վահագն գրադարանին դասախօսութիւնը այսօր Հինգշաբթի երեկոյ ժամը 9ին Ֆլօրիայի մէջ։ Կը խօսի Օր. Արաքսի Թորոսեան Տրապիզոնցի Անթառամ վէպին մասին։ Մէկ ժամ սինէմա, Չարլի Չէփլին փոլիամէն։ Կը հրաւիրուին անդամներն ու համակիրները։

ՓԱՐԻԶԻ Ուրֆայի Հայր. Միութեան ժողովը վաղը Ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին Ֆլօրիայի մէջ։

ՏԷՍԻՆԻ Բարձր Հայքի Հայր. Միութեան ժողովը վաղը Ուրբաթ իրիկուն ժամը 8ին նախկին ժողովին տեղը։ Հայրենակիցներէ կը խնդրուի ներկայ գտնուիլ այս ժողովին։

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— Կը փնտռուին Դրչէնիրի Գայլապաշ Թաղէն Տիգրան Կարապետ, Հայկուհի եւ Նուէր Պալըքճեան, որոնք Կիլիկիոյ պարպումէն յետոյ մեկնած են Փարիզ։ Իմացնել իրենց քեռորդւոյն Կարապետ Թիւթիւնճեանի, B. Postale 75 Adana,Turquie.

— Կը փնտռուի Խանիկացի (Մարաշ) Գրիգոր Պարսամեան կը կարծուի թէ 1925ին կը գտնուէր Պէյրութ։ Իմացնել իր քրոջ Տիկ. Կատարինէ Պլուզեանի, 52 Rue Centrale, Le Cannet (A. M.) France.

— Ատաբազարցի Խաչիկ Կուկուկեան կը փնտռէ իր հայրը Անդրանիկ Կուկուկեան, մայրը՝ Տիգրանուհի, քոյրը՝ Հոգինէ, մեծ մայրը՝ Փարիզ։ Պոլսէն լուր առնուած է թէ այժմ կը գտնուին Ֆրանսա։ Իմացնել Խաչիկ Կուկուկեանի, Couvent Arménien, Jérusalem, Palestine.

— Կը փնտռուի Պրուսայի Չէնկիւէր գիւղէն Մարտիրոս Քէօսէեան որ տարագրութեան միջոցին մնացած է Բաղաչի շրջանի Արաբներուն մօտ։ Իր մասին ստոյգ լուր տուողին 1000 ֆր. նուէր։ Իմացնել՝ Sahac Keusseianի, Latamarco 171, Corrientes, (Rép. Argentine)։ Կը խնդրուի Սուրիահայ եւ Եգիպտահայ թերթերէն արտատպել։

Այրի Տիկ. Զաֆիռ Յարութիւնեան, Պ. Յովհաննէս Միսաքեան եւ իրենց ազգականները սրտի խորունկ կսկիծով կը ծանուցանեն իրենց ամուսնոյն, քեռայրին եւ ազգականին՝

ՊՕՂՈՍ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆԻ

ղառնաղէտ մահը՝ որ տեղի ունեցաւ 24 Փետրուար Երեքշաբթի օր։

Յուղարկաւորութիւնը կը կատարուի այսօր Հինգշաբթի կէսօրէ վերջ ժամը 1.30ին Փարիզի Հայոց եկեղեցիին մէջ, 15 Rue Jean Goujon, Հանգուցեալին մարմինը պիտի փոխադրուի Pantinի գերեզմանատունը։

Մահազդ ղրկուած չըլլալով կը խնդրուի ներկայս իբր այդ նկատել։

ԿԷՅՎԷՅԻ, ԳՈՒՐՃՊԵԼԷՆԻ, ԳՆՃԸԼԱՐԻ, ԷՇՄԷԽՄԻՋԱԳԻՒՂԻ ՀԱՅՐԵՆԱԿԻՑՆԵՐՈՒՆ

Կէյվէյի եւ Շրջ. հայրենակցական միութեան վարչութիւնը երկրորդ եւ կարեւոր խորհրդակցական ժողովի կը հրաւիրէ Փարիզ եւ արուարձանները բնակող բոլոր հայրենակիցները այս Կիրակի կէսօրէ վերջ ժամը 2.30ին 3 Rue de Paris, Issy-les-Moulineaux, (առնել հանրակառք 23, 32 եւ իջնել Ferme de Moulineaux)։ Օրակարգ՝ ծրագիր-կանոնագրի սրբագրութիւն եւ նոր վարչութեան ընտրութիւն։ Ներկաներու թիւը մեծամասնութիւն պիտի համարուի։

ՆՈՒԷՐՆԵՐ ՊԱՍՐԱՅԻ ԵՐԻՏ. ՄԻՈՒԹԵԱՆ ԳՐԱԴԱՐԱՆԻՆ

Օր. Անժել Թովմասեան, Տիկ. Վիքթորիա Հէքիմեան, Տիկին Մաքրուհի Վ. Ջուլուսեան, Պ. Մ. Դրիգորեան, Տիկ. Աստէ (Աստղի) 2ական ռուփի, փոքրիկն Սիմոն Սօրօեան 1, Օր. Զապէլ 1, Ս. Օ. Վարդանեան 5 ռուփի արժողութեամբ իրեղէններ, Վ. Ջուլուսեան 2 գիրք, Վ. Հ. Միութիւն 8 կտոր գիրք եւ 2 նկար, Ս. Մինասեան 3 կտոր գիրք եւ 3 նկարներ, Յովսէփ Մէսսի «կեանք եւ արուեստ» գիրքը, Ռ. Ծնունդեան 5 կտոր գիրք, Ե. Տէր Օհաննէսեան 1 նկար, Ս. Աբգարեան 3 վարագոյր (դռներու), Օր. Ազնիւ Ջուլուսեան 1 սեղանի սփռոց (ձեռագործ), Տիկ. Ազնիւ Պաղտասարեան 1 սեղանի սփռոց (ձեռագործ), Օր. Վարդուհի Յովսէփեան 6 ռուփի արժողութեամբ իրեղէններ, Ս. Պօղոսեան 3 ռուփի արժողութեամբ իրեղէններ, Լ. Սեդրակեան 5 ռուփի արժողութեամբ իրեղէններ, Հ. Յովսէփեան 5 ռուփի արժողութեամբ իրեղէններ, Վ. Ջուլուսեան 3 ռուփի արժողութեամբ իրեղէններ, Կ. Յարութիւնեան 1 լամբ։

Վարչութիւն























IMPRIMERIE - MASSIS -ÉDITION

208bis, Rue Lafayette Paris

Le Gérant H STEPHAN

